## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ՕԳՈՍՏՈՍ 1977
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угнов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







Ինֆորմացիոն հաղորդագրություն

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆՍՏԱՇՐՋԱՆԻ ՄԱՍԻՆ

Հուլիսի 7-ին տեղի ունեցավ Հայկական ՍՍՀ իններորդ գումարման Գերագույն սովետի 5-րդ նստաշրջանը:

«ՍՍՀՄ Սահմանադրության նախագծի և ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թվականի մայիսյան պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումից բխող՝ հանրապետության աշխատավորների դեպուտատների սովետների խնդիրների մասին» զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար, դեպուտատ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԸ:

Քննարկված հարցի առթիվ ընդունվեց որոշում: Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը միահամուռ հավանություն տվեց համաժողովրդական քննարկման դրված ՍՍՀՄ Սահմանադրության (հիմնական օրենքի) նախագծին, ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թվականի մայիսյան պլենումի որոշումներին, պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրության նախագծի մասին» զեկուցման բովանդակած դրույթներին ու հետևություններին:

Գերագույն սովետը որոշում ընդունեց Հայկական ՍՍՀ նոր Սահմանադրության նախագծի նախապատրաստման հանձնաժողով կազմելու մասին: Հանձնաժողովի նախագահ ընտրվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԸ:

# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

Ընկեր դեպուտատնե՛ր։ Մեր երկրի պատմության մեջ ներկա տարին առանձնահատուկ տեղ կգրավի։ Դա Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի տարին է։ Դրա հետ մեկտեղ այն կլինի ՍՍՀՄ նոր Սահմանադրության՝ զարգացած սոցիալիստական հասարակության Սահմանադրության ընդունման տարի։

Սովետական ժողովուրդը քաղաքական և աշխատանքային վիթխարի խանդավառության իրադրության մեջ պատրաստվում է արժանավայել դիմավորելու մեծ Հոկտեմբերի փառապանծ հոբելյանը։ Սովետների երկրի բոլոր աշխատավորները, մեր մեծ սոցիալիստական հայրենիքի համար օրինական հպարտությամբ, մեր անցած ուղու և մեծագործությունների բարձր գիտակցությամբ, հսկայական ակտիվության պայմաններում քննարկում են ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագիծը։

Սովետական Հայաստանի աշխատավորները, ինչպես ամբողջ սովետական ժողովուրդը, մեծ ոգևորությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թվականի մայիսյան պլենումի որոշումները, ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծի մասին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ծրագրային, վառ զեկուցումը քաղաքական և գաղափարական աչքի ընկնող փաստաթուղթ է, որում մարքսիզմ-լենինիզմի հիման վրա, կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ տեսության անխախտ զուգորդմամբ, քաղաքականության և էկոնոմիկայի օրգանական փոխկապակցությամբ, դասակարգայնության, գիտականության և ռեալականության լենինյան սկզբունքներով ի մի է բերված 1936 թվականի Սահմանադրության ընդունումից հետո ընկած ժամանակաշրջանում կուսակցության և սովետական ժողովրդի բազմաբովանդակ գործունեությունը։

Զեկուցման մեջ բազմակողմանի վերլուծության են ենթարկված վերջին տասնամյակներում մեր հասարակության և միջազգային իրադրության զարգացման արդյունքները, խտացված ձևով ցույց են տրված երկրի վիթխարի նվաճումները ներքին և արտաքին քաղաքականության բնագավառներում, բացահայտված են դրանց բարոյա-քաղաքական և սոցիալ-տնտեսական ակունքները, ընդհանրացված են մեր հայրենիքի կյանքում տեղի ունեցած արմատական փոփոխությունները, տրված են այդ փոփոխությունների քաղաքական ու սոցիալ-տնտեսական բնութագրությունն ու գնահատականը, խորապես գիտականորեն հիմնավորված է նոր Սահմանադրության անհրաժեշտությունը, սահմանված են այն կարևորագույն խնդիրները, որոնք ծառանում են կուսակցական, կոմերիտական և հասարակական մյուս կազմակերպությունների առջև նոր Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկման, նրա դրույթների կենսագործման կապակցությամբ։

Սովետական ժողովրդի միահամուռ պաշտպանությանն ու հավանությանն արժանացավ ՍՍՀՄ Գերագույն սովետի վերջերս ավարտված նստաշրջանում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընտրելը։

Այդ կարևոր ակտի իրագործումը՝ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղարին պետական այդ բարձր և պատասխանատու պոստում ընտրելը արտացոլում է կոմունիստական կուսակցության ղեկավար և ուղղություն տվող հարաճուն դերը, հանդիսանում է սովետական ժողովրդի և կուսակցության այն անսահման վստահության և խոր հարգանքի նոր ապացույցը, որ նրանք տածում են Լեոնիդ Իլյիչի՝ որպես քաղաքական և պետական ականավոր գործչի, հավատարիմ լենինյանի հանդեպ։ Այդ ակտը մեր երկրի բազմակողմանի ծաղկման գործում, ամբողջ աշխարհի խաղաղության և առաջադիմության պայքարում նրա վիթխարի ծառայությունների համաժողովրդական ճանաչման վառ արտահայտությունն է։

Թույլ տվեք, ընկերնե՛ր, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի անունից, հանրապետության բոլոր աշխատավորների, ամբողջ հայ ժողովրդի անունից ջերմորեն և ի սրտե շնորհավորել ընկեր Լ. Ի. Բրեժնևին՝ մեր բազմազգ պետության ղեկավար ընտրվելու առթիվ և նրան մաղթել քաջառողջություն, անսպառ եռանդ և ոգևորություն կոմունիզմի մեծ իդեալների հաղթանակի ճանապարհին նրա բազմաբեղուն գործունեության մեջ՝ հանուն սովետական ժողովրդի հետագա բարօրության։

Նոր Սահմանադրության նախագծի՝ սկսված համաժողովրդական քննարկումը տեղի է ունենում հայրենասիրական բարձր վերելքի, կոմունիստական կուսակցության շուրջը սովետական մարդկանց էլ ավելի սերտ համախմբման իրադրության մեջ։

Սովետական Հայաստանի կոմունիստները, աշխատավորները, ինչպես սովետական ամբողջ ժողովուրդը, ջերմորեն հավանություն են տալիս ու պաշտպանում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի կողմից իրականացվող քաղաքական կուրսը, ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թվականի մայիսյան պլենումի և ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանի որոշումները, նոր Սահմանադրության նախագիծը։

Այդ են համոզիչ կերպով վկայում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունիսի 10-ին տեղի ունեցած պլենումի, կուսակցական ակտիվի ժողովների, կուսակցական կոմիտեների պլենումների, աշխատավորական կոլեկտիվների ժողովների արդյունքները։

Դա վառ կերպով ցուցադրվեց նաև այս տարվա հունիսի 19-ին քաղաքական մեծ վերելքի իրադրության պայմաններում տեղի ունեցած աշխատավորների դեպուտատների տեղական սովետների ընտրություններում և նրանց նոր գումարման առաջին նստաշրջաններում։

Այդ են վկայում բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության ներկայացուցիչների ելույթները մամուլի էջերում, հեռուստատեսությամբ և ռադիոհաղորդումներում, նրանց բազմաթիվ նամակները, որ ստացվում են կուսակցական, սովետական և մյուս մարմիններում, նախագծի քննարկման արդյունքները՝ ըստ բնակության վայրի։

Նախագծի լայնորեն ծավալվող քննարկումը ցույց է տալիս, որ մեր հանրապետության աշխատավորները այդ կարևորագույն փաստաթուղթն ընդունում են որպես սովետական պետության ծաղկման, նրա հզորության և հեղինակության ամրապնդման նկատմամբ, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման, ժողովրդի բարօրության նկատմամբ լենինյան կուսակցության հոգատարության մի նոր համոզիչ դրսևորում։

Այդ հիրավի համաժողովրդական փաստաթղթի լայն, ազատ և գործարար քննարկմանը մասնակցում են հանրապետության հազարավոր և հազարավոր քաղաքացիներ։ Քննարկումը դարձել է սովետական կարգի իսկական դեմոկրատիզմի փայլուն վկայություն, երկրի հասարակական կյանքի հետագա ակտիվացման, մասսաների ստեղծագործական նախաձեռնության զարգացման հզոր խթան։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը, ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագիծը միջազգային արձագանքների լայն ալիք առաջացրին։ Մեր արտասահմանյան բարեկամները հիմնական օրենքի նախագծում տեսնում են կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովրդի անցած հերոսական ուղու օրինաչափ արդյունքը, վերջին տասնամյակներում սովետական հասարակության տնտեսական, քաղաքական և սոցիալ-կուլտուրական զարգացման ակնառու արդյունքը։ Սահմանադրության նախագծի հսկայական ձգողական ուժը չեն կարող լռության մատնել նույնիսկ մեր թշնամիները։

Կարելի է վստահությամբ ասել, որ իր կարևորությամբ, սովետական հասարակության կենսագործունեության բոլոր կողմերի վրա, աշխարհում տիրող ամբողջ իրադրության վրա իր հսկայական ներգործությամբ նոր Սահմանադրության ընդունումը կլինի իսկական պատմական ակտ, դարակազմիկ նշանակություն ունեցող իրադարձություն։

Խորամուխ լինելով նոր Սահմանադրության հատու, իմաստալից տողերին, ծանոթանալով նրա դրույթներին, յուրաքանչյուր սովետական մարդ տոգորվում է հսկայական հպարտությամբ մեր երկրի համար, կոմունիստների լենինյան կուսակցության համար, այն ամենի համար, ինչ ստեղծված է կուսակցության ղեկավարությամբ կոմունիզմի ուղին հարթող սովետական ժողովրդի մտքով, տաղանդով, անձնվեր աշխատանքով։ Ուսումնասիրելով և իմաստավորելով նախագիծը, յուրաքանչյուր սովետական մարդ մտովի դիմում է անցած էտապին, գալիքի ոգեշունչ հորիզոններին, և նրա սիրտը համակվում է բերկրանքի, խորին գոհունակության, պայծառ լավատեսության զգացումով, վաղվա օրվա նկատմամբ անսասան հավատով։

ՍՍՀՄ Սահմանադրության նախագիծը բովանդակում է ստեղծագործական հսկայական պոտենցիալ։ Նոր հիմնական օրենքը հզոր խթան կլինի մասսաների լայն նախաձեռնության զարգացման համար, կարևոր նախադրյալ կդառնա ղեկավարման և կառավարման բոլոր օղակների գործունեության կատարելագործման համար։ Նախագիծը կհարստացնի համաշխարհային սոցիալիզմի փորձի ընդհանուր գանձարանը, վառ ու ոգևորիչ օրինակ կդառնա կապիտալի երկրների աշխատավորների համար, որոնք պայքարում են հանուն սոցիալական առաջադիմության և դեմոկրատիայի։

Ընկերնե՛ր։ ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագիծը, ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թվականի մայիսյան պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի տված զեկուցումը, ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանի նյութերը լայնորեն հայտնի են։ Հանրապետական մամուլում լուսաբանվել է նաև այդ հարցերի քննարկումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումում։ Ուստի հարկ չկա մանրամասնորեն շարադրել հիշյալ կարևորագույն կուսակցական-պետական փաստաթղթերի բովանդակությունը։

Նպատակահարմար ենք գտնում կանգ առնել ՍՍՀՄ Սահմանադրության նախագծի առավել արմատական դրույթների և ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումից բխող խնդիրների վրա։

Նոր Սահմանադրության հիմնական ուրվագծերը սահմանվել են XXV համագումարում։ ՍՄԿԿ Կենտկոմի՝ համագումարին տված զեկուցման մեջ ասվում է, որ նոր Սահմանադրությունը պետք է արտացոլի սոցիալիզմի մեծ հաղթանակները, վավերագրի զարգացած սոցիալիստական հասարակության, նրա քաղաքական կազմակերպության հիմնական գծերը, ժողովրդական տնտեսության և հասարակական կյանքի մյուս ոլորտների ղեկավարման սկզբունքները, նախատեսի սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացումը։

«Դրանով իսկ,— համագումարում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— մենք կընդգծենք սոցիալիստական պետության մարդասիրական բնույթը, որպես մի պետություն, որն իր առջև նպատակ է դնում կոմունիզմի կառուցումը՝ հանուն աշխատավոր մարդու, հանուն ամբողջ ժողովրդի շահերի»։

Մեր երկրի հիմնական օրենքի նախագծում վավերագրված են սովետական հասարակության սոցիալ-տնտեսական սիստեմի և նրա քաղաքական կազմակերպման գլխավոր սկզբունքները։

Սովետական առաջին Սահմանադրությունը եղավ ՌՍՖՍՀ 1918 թվականի Սահմանադրությունը, որը մշակվեց Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ և անմիջական մասնակցությամբ։ Այն վավերագրեց Հոկտեմբերի նվաճումները, պրոլետարիատի դիկտատուրան՝ բանվորների, գյուղացիների և կարմիրբանակայինների դեպուտատների սովետների ձևով, հռչակեց սոցիալիստական խնդիրներն ու նպատակները։

1922 թվականին ՍՍՀՄ սովետների առաջին համագումարում իրականացվեց սովետական հանրապետությունների միավորումը միութենական մեկ պետության՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ։ Լենինյան ազգային քաղաքականության՝ բոլոր ժողովուրդների բարեկամության ու եղբայրական համագործակցության քաղաքականության այդ մեծագույն նվաճումը իր վավերագրումն ստացավ 1924 թվականի ՍՍՀՄ Սահմանադրության մեջ։ Նրա հիմքում դրվեցին իրավահավասար ժողովուրդների կամավոր դաշինքի լենինյան սկզբունքները։ Այն ամբողջ աշխարհի աշխատավորներին ցուցադրեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի և բոլոր ազգերի ու ազգությունների սերտ համագործակցության հիման վրա բազմազգ պետություն ստեղծելու օրինակ։

30-ական թվականների կեսերին ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակը անհրաժեշտություն առաջացրեց մշակել և գործողության մեջ դնել նոր սահմանադրություն։ 1936 թվականի դեկտեմբերի 5-ին ընդունված ՍՍՀՄ Սահմանադրությունը արտացոլեց այն խոր փոփոխությունները, որոնք սովետական հասարակական ու պետական կառուցվածքի մեջ տեղի էին ունեցել սոցիալիզմի հիմքերի կառուցման կապակցությամբ, օրենսդրականորեն վավերագրեց ՍՍՀՄ-ում սոցիալիստական հասարակական հարաբերությունների հաղթանակը, դրանց համապատասխանեցրեց քաղաքական վերնաշենքը։

1936 թվականի Սահմանադրությունը հռչակեց, որ ՍՍՀՄ-ում ամբողջ իշխանությունը պատկանում է քաղաքի և գյուղի աշխատավորներին՝ ի դեմս աշխատավորների դեպուտատների սովետների։ Այն սահմանեց ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի սկզբունքը՝ գաղտնի քվեարկությամբ, ընդլայնեց սովետական քաղաքացիների դեմոկրատական իրավունքներն ու ազատությունները։ Այն ժամանակ մշակված սահմանադրական նորմերից շատերը այսօր էլ շարունակում են համապատասխանել մեր հասարակարգի էությանը։

Դրա հետ մեկտեղ, ինչպես շեշտեց ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թվականի մայիսյան պլենումը, այդ ժամանակվանից անցած ավելի քան 40 տարում սովետական հասարակության մեջ և միջազգային ասպարեզում հսկայական փոփոխություններ են տեղի ունեցել։

Պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ տրվեց այդ փոփոխությունների խոր վերլուծությունը, համակողմանիորեն հիմնավորվեց նոր Սահմանադրության ընդունման անհրաժեշտությունը։ Նրանում վառ ու համոզիչ կերպով ցույց է տրված, որ ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագիծը կոմունիստների կուսակցության ղեկավարությամբ և առաջնորդությամբ սովետական պետության և նրա ժողովրդի անցած ավելի քան քառասնամյա ուղու արժանի հանրագումարն է։

Դրանք, հիրավի, մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի ամրապնդման, իր սոցիալիստական հայրենիքի համար, պատմության մեջ եղած պատերազմներից ամենածանր պատերազմում նրա ազատության, անկախության և պատվի պաշտպանության համար սովետական բազմազգ ժողովրդի ցուցաբերած հերոսական խիզախության, նրա անձնվեր աշխատանքի տարիներ ու տասնամյակներ էին։

Դրանք Սովետական Միության և նրա յուրաքանչյուր հանրապետության առնականացման ու իսկական տնտեսական, քաղաքական և սոցիալ-կուլտուրական ծաղկման, աշխատավորների նյութական և հոգևոր բարեկեցության անշեղ աճի, ժողովուրդների կուռ միասնության ու բարեկամության հետագա ամրապնդման, ազգամիջյան կապերի ու համագործակցության, ազգերի և ազգությունների մերձեցման, մեր երկրի բոլոր ժողովուրդների միջև սոցիալիստական նոր հարաբերությունների հաստատման, ՍՍՀՄ-ում մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի, կազմավորման ու առաջացման տարիներ ու տասնամյակներ էին։

Դրանք մեր սոցիալիստական հասարակության սոցիալական հիմքերի մերձեցման և սոցիալական միատարրության հաստատման, նրա տարբեր դասակարգերի ու խմբերի տարբերությունների նվազեցման, սովետական դեմոկրատիայի հետագա զարգացման, սոցիալիստական օրինականության և ի-

րակարգի ամրապնդման, դեմոկրատիայի, քաղաքացիների իրավունքների, սահմանադրական երաշխիքների և դրանց իրականացման բնագավառում սոցիալիզմի նվաճումների ամրապնդման հարաճուն պրոցեսի տարիներ ու տասնամյակներ էին:

Դրանք այսօր աշխարհի ամենահզոր տերություններից մեկը դարձած սովետական պետության սոցիալ-քաղաքական հիմքի աննախընթաց աճի, նրա համակողմանի զարգացման և ամրապնդման տարիներ ու տասնամյակներ էին. դրանք այն տարիներն էին, որոնց ընթացքում մեր հասարակարգը վերածվեց զարգացած սոցիալիստական հասարակարգի, երբ հաղթանակած սոցիալիզմի՝ աշխարհում առաջին երկիրը առաջինը ձեռնամուխ եղավ կոմունիզմի կառուցման խնդիրների գործնական լուծմանը:

Դրանք ժողովրդական տնտեսության և սոցիալիստական հասարակության գործերի ղեկավարման ասպարեզում դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի զարգացման, քաղաքականության, սոցիալական կյանքի, էկոնոմիկայի ոլորտներում կառավարման կատարելագործման տարիներ ու տասնամյակներ էին, երբ կառավարումը բարձրացվում էր արդի պահանջների մակարդակին, նրան տալով որակապես նոր ուղղություններ և կազմակերպական սկզբունքներ:

Անցած չորս տասնամյակներին լրջորեն փոխվեցին թե՛ երկրի էկոնոմիկան, որն այժմ իրենից ներկայացնում է մի միասնական, հզոր ժողովրդատնտեսական օրգանիզմ, թե՛ սովետական հասարակության սոցիալական կառուցվածքը, թե՛ սովետական պետությունը, որը պրոլետարիատի դիկտատուրայի պետությունից վերածվեց համաժողովրդական պետության: Դրանք տարիներ էին, որոնք հիրավի ցույց տվեցին ՍՍՀՄ քաղաքական սիստեմում Սովետական Միության կառավարող կոմունիստական կուսակցության կազմակերպող և ուղղություն տվող հարաճուն դերը, կուսակցություն, որի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հաղթարշավ կատարեց դեպի զարգացած սոցիալիզմը: «Մենք ստեղծել ենք նոր հասարակարգ, մի այնպիսի հասարակարգ, որի նմանը մարդկությունը դեռ չէր իմացել,— նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում: — Դա անճգնաժամ, մշտապես աճող էկոնոմիկայի, սոցիալիստական հասուն հարաբերությունների, իսկական ազատության հասարակարգ է: Դա մի հասարակարգ է, որտեղ տիրապետում է գիտական մատերիալիստական աշխարհայացքը: Դա մի հասարակարգ է, որն անսասանորեն վստահ է ապագային, կոմունիստական լուսավոր հեռանկարներին: Մեր առջև բաց են հետագա համակողմանի առաջադիմության անծայրածիր հեռաստանները»:

Հենվելով ձեռք բերվածի վրա, սովետական ժողովուրդը կուսակցության ղեկավարությամբ այժմ լուծում է ավելի բարդ պատմական խնդիրներ՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, սոցիալիստական հարաբերությունները աստիճանաբար կոմունիստականի վերափոխելու, մարդկանց կոմունիստական գիտակցականության ոգով դաստիարակելու խնդիրները:

Իսկ եթե խոսելու լինենք միջազգային կարգի գործոնների մասին, որոնք պայմանավորում են նոր Սահմանադրություն ստեղծելու անհրաժեշտությունը, ապա դրանք վկայում են, որ խիստ փոխվել է աշխարհի սոցիալ-քաղաքական ամբողջ կերպարանքը և ամենից առաջ ՍՍՀՄ-ի միջազգային դրությունը: Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած համաշխարհային պատմական հաղթանակը ոչ միայն թույլ տվեց պաշտպանել մեր հայրենիքի ազատությունն ու անկախությունը, այլև նոր, բարենպաստ հնարավորություններ բացեց խաղաղության և սոցիալական առաջադիմության ուժերի աճի համար: Սոցիալիզմի վերածվելը համաշխարհային սիստեմի, մեր հայրենիքի կապիտալիստական շրջապատման վերացումը, կապիտալիզմի դիրքերի էական թուլացումը, նախկին գաղութների տեղ տասնյակ երիտասարդ սուվերեն պետությունների առաջացումը, սովետների երկրի միջազգային հեղինակության և ազդեցության աննախընթաց աճը. այս ամենը արմատապես փոխեց ուժերի տեղաբաշխումը համաշխարհային ասպարեզում, պայմանավորեց նոր



համաշխարհային պատերազմը կանխելու, միջազգային հարաբերությունների պրակտիկայում խաղաղ գոյակցության սկզբունքները արմատավորելու ռեալ հնարավորության երևան գալը:

Երկրի ներսում և միջազգային ասպարեզում կատարված խոր փոփոխությունները համակողմանի արտացոլում են գտել նոր Սահմանադրության նախագծում: Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, երկրի հիմնական օրենքի նախագիծն ընդհանրացնում է սովետական պատմության ամբողջ սահմանադրական փորձը և այն հարստացնում արդի դարաշրջանի պահանջներին համապատասխանող նոր բովանդակությամբ: Այն հենվում է սովետական օրենսդրության՝ վերջին տարիներս կատարված նորացման և կատարելագործման վրա, ինչպես նաև օգտագործվում է սոցիալիզմի եղբայրական երկրների սահմանադրական զարգացման փորձը:

Կոմունիստական շինարարության արդի փուլում կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովրդի կողմից լուծվող խնդիրների մասշտաբների և բարդության աճը, զարգացած սոցիալիզմի պայմաններում հասարակական և պետական կարգի առավել բարձր կազմակերպումը, նոր Սահմանադրության նախագծի քաղաքական և տեսական լայն հիմքը իրենց դրոշմն են դրել նրա բովանդակության, կառուցվածքի և ծավալի վրա: Այժմ գործող հիմնական օրենքի հետ նախագծի համեմատությունը ցույց է տալիս, որ ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ նախատեսվում են ութ նոր գլուխներ և 27 նոր հոդվածներ: Նոր բաժիններ, գլուխներ և հոդվածներ մտցնելը թույլ է տվել ավելի լրիվ շարադրել պետական ու հասարակական կյանքի կենսականորեն կարևոր ոլորտներին վերաբերող հիմնական սահմանադրական դրույթներն ու սկզբունքները, ավելի լրիվ բացահայտել զարգացած սոցիալիզմի սոցիալ-դասակարգային էությունն ու նպատակամղվածությունը, մեր հասարակարգին ներհատուկ նոր գծերը:

Աշխատավորների խորին գոհունակությունն առաջացրեց ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծի առանցքային, առավել կարևոր դրույթներից մեկը, որտեղ տրված է սովետական հասարակարգի քաղաքական սիստեմի մեջ Սովետական Միության կոմունիստական կուսակցության դերի ծավալուն բնութագիրը:

Մեծ Լենինի ստեղծած և կոփած կուսակցությունը սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման բոլոր փուլերում պատվով և արժանի կերպով է կատարել իր վրա դրված պատմական առաքելությունը, հանդես եկել որպես աշխատավորների փորձված ավանգարդ՝ ժողովրդի երջանկության համար մղվող պայքարում: Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, ինչպես նշվում է Սահմանադրության նախագծում, սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժն է, նրա քաղաքական սիստեմի, բոլոր պետական և հասարակական կազմակերպությունների միջուկը: ՍՄԿԿ-ն գոյություն ունի ժողովրդի համար և ծառայում է ժողովրդին: Զինված մարքս-լենինյան ուսմունքով, նա որոշում է հասարակության զարգացման գլխավոր հեռանկարը, ՍՍՀՄ ներքին և արտաքին քաղաքականության գիծը, ղեկավարում է սովետական ժողովրդի ստեղծարար մեծ գործունեությունը: Նորարար կուսակցությունը, ստեղծարար կուսակցությունը գիտականորեն հիմնավորված, պլանաչափ բնույթ է տալիս կոմունիզմի հաղթանակի համար մեր ժողովրդի պայքարին:

Լենինյան ավանդույթին համապատասխան, նախագիծը ոչ միայն արտացոլում է սոցիալիզմի սոցիալ-տնտեսական և քաղաքական մեծ նվաճումները, այլև վավերագրում է մեր կուսակցության ծրագրային դրույթները: «Սովետական պետության գերագույն նպատակը,— ասված է նախագծում,— անդասակարգ կոմունիստական հասարակարգի կառուցումն է»:

Հիմնական օրենքում տրվում է մեր երկրի քաղաքական սիստեմի ծավալուն բնութագիրը: Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, նշվում է նրանում, համաժողովրդական սոցիալիստական պետություն է, որն արտահայտում է երկրի բանվոր դասակարգի, գյուղացիու-

սոցիալիզմի երկրների հետ՝ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հիման վրա։

Իր գոյության վեց տասնամյակների ընթացքում՝ սկսած Հաշտության լենինյան դեկրետից մինչև մեր օրերը, որոնք լեցուն են ՍՄԿԿ XXV համագումարի արտաքին-քաղաքական կուրսի իրականացման լարված պայքարով, սովետական պետությունը անշեղորեն ու հետևողականորեն պաշտպանել է խաղաղության և անվտանգության ապահովման գործը մեր հայրենիքի համար, աշխարհի բոլոր երկրների և ժողովուրդների համար։

Կոմունիստական կուսակցության և սովետական պետության արտաքին-քաղաքական կուրսի հարաճուն հեղինակության ևս մի վառ վկայությունն են ընկեր Լ. Ի. Բրեժնևի վերջերս Ֆրանսիա կատարած այցը, սովետա-ֆրանսիական փաստաթղթերի ստորագրումը, որոնք միջազգային կարևոր նշանակություն ունեն։

Սովետական Հայաստանի աշխատավորները. ինչպես ամբողջ սովետական ժողովուրդը, ջերմորեն հավանություն են տալիս և միահամուռ պաշտպանում կոմունիստական կուսակցության լենինյան ներքին և արտաքին քաղաքականությունը՝ մեր պետության հետևողական և սկզբունքային դիրքը խաղաղության, միջազգային անվտանգության և սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարում։

ՍՍՀՄ Սահմանադրության նախագծում նշվում է, որ պետությունն ապահովում է սովետական ժողովրդի սոցիալիստական նվաճումների, նրա խաղաղ աշխատանքի, ՍՍՀՄ սուվերենության և տերիտորիալ ամբողջականության պահպանությունը։ Մեր զինված ուժերը կենսական թելերով կապված են ժողովրդի հետ, հենվում են նրա ակտիվ պաշտպանության վրա։ Սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը պետության կարևորագույն ֆունկցիան է, ամբողջ ժողովրդի, ՍՍՀՄ յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքը։

Այսպիսով, ընկերներ, ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագիծը պետական ակնառու մի փաստաթուղթ է, որի մեջ գիտական խորությամբ և սպառիչ լիակատարությամբ ամփոփված են սոցիալիստական հասարակարգի զարգացման ամբողջ պատմության մեծագույն արդյունքները, ընդհանրացված են կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ մեր ժողովրդի ձեռք բերած փայլուն նվաճումները, վավերագրված են հասուն սոցիալիզմի հասարակարգի սահմանադրական հիմունքները։

Ընկերնե՛ր։ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրության նախագծի՝ ամբողջ երկրում, այդ թվում և մեր հանրապետությունում ծավալված ազատ, հրապարակային և գործարար քննարկումը սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ընդլայնման և խորացման իսկական մարմնավորումն է, իր պետության, հասարակության գործերի կառավարմանը ժողովրդի ռեալ և անմիջական մասնակցության թափի համոզիչ ցուցադրումը։ Դա մեկ անգամ ևս վկայում է սովետական ժողովրդի հզոր միասնությունը, նրա կուռ համախմբվածությունը կոմունիստական կուսակցության շուրջը, ակնառու կերպով հաստատում Սահմանադրության նախագծի այն դրույթի ճշմարտացիությունը, որ զարգացած սոցիալիզմի հասարակության կյանքի օրենքը բոլորի հոգատարությունն է յուրաքանչյուրի բարեկեցության նկատմամբ և յուրաքանչյուրի հոգատարությունը բոլորի նկատմամբ։

Սովետական Հայաստանի աշխատավորները, կոմունիստները. բոլոր քաղաքացիները, ցուցադրելով իրենց հավատարմությունը և նվիրվածությունը կոմունիստական կուսակցության լենինյան քաղաքականությանը, սովետական պետության հետագա ամրապնդման իրենց ձգտմանը, ամենաակտիվ կերպով և գործարար մթնոլորտում ուսումնասիրում և քննարկում են երկրի նոր Հիմնական օրենքի նախագիծը։

Ինչպես հայտնի է, Սահմանադրության նախագծի քննարկումը կշարունակվի մինչև այս տարվա օգոստոսի վերջը։ Անցած ամսին համաժողովրդական քննարկմանը մասնակցել է 230.577 քաղաքացի, ելույթ է ունեցել 17.205 մարդ։ Նախագծի վերաբերյալ ժողովներում արվել է 335 առաջարկություն։



Սահմանված կարգի համաձայն, Սահմանադրության նախագծի քննարկման ժամանակ աշխատավորների հայտնած առաջարկություններն ու ցանկությունները ի մի են բերվում և ուղարկվում սահմանադրական հանձնաժողովին։

Քննարկման արդյունքները վկայում են հանրապետության աշխատավորների քաղաքական և քաղաքացիական հսկայական ակտիվության մասին, նրանց կողմից սոցիալիստական պետականության բարձր զգացողության, սովետական ջերմ հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի դրսևորման մասին։ Ամենուրեք նոր Սահմանադրության նախագիծը արժանանում է ջերմ հավանության ու պաշտպանության։ Բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության լայն շրջանների ներկայացուցիչների ելույթները, դրանցում պարունակված առաջարկությունները արտահայտում են անկեղծ հոգատարություն կոմունիստական կուսակցության քաղաքականության, կուսակցության XXV համագումարի որոշումների հետևողական և անշեղ իրականացման նկատմամբ, սովետական պետության տնտեսական և բարոյաքաղաքական պոտենցիալի ամրապնդման, պետական և հասարակական գործերի կառավարումը առավել արդյունավետ դարձնելու նկատմամբ։

Ելույթներում և առաջարկություններում շեշտվում է ՍՄԿԿ-ի դերը աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծման, սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակի ապահովման և ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիստական հասարակության կառուցման գործում, ընդգծվում են կոմունիստական հասարակարգի կառուցման, էկոնոմիկայի, կուլտուրայի, գիտության զարգացման ուղղությամբ սովետական ժողովրդի ձեռք բերած նվաճումները, ցույց է տրվում ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի անշեղ աճը, ընդգծվում են սովետական պետության մարդասիրական բնույթը, սովետական հասարակության դեմոկրատիզմը, սովետական դեմոկրատիայի քաղաքական, տնտեսական և սոցիալական հիմքերը, դեմոկրատիա, որը իրականում երաշխավորում է քաղաքացիների ազատությունը և իրավահավասարությունը։ Այդ ամենի ֆոնի վրա մերկացվում է կապիտալիստական հասարակարգի հակամարդասիրական էությունը, բուրժուական հասարակության պայմաններում անհատի իրավունքների ու ազատությունների ռեալ երաշխիքների բացակայությունը։

Հանրապետության Գերագույն սովետի ներկա նստաշրջանում մենք, հարգելի դեպուտատներ, կարող ենք մեծ բավականությամբ նշել, որ մեր ժողովուրդը, Սովետական Հայաստանի բոլոր աշխատավորները, ակտիվ մասնակցություն բերելով ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկմանը, մեկ անգամ ևս ցուցադրում են իրենց քաղաքական հասունությունը, հավատարմությունն ու նվիրվածությունը կոմունիզմի վսեմ գաղափարներին, կոմունիստական կուսակցության գործին, իրենց սերտ համախմբվածությունը կուսակցության Կենտրոնական կոմիտեի շուրջը։

Ընկեր դեպուտատնե՛ր։ ՍՍՀՄ Սահմանադրության նախագիծը զարգացած սոցիալիզմի հասարակության իսկական մանիֆեստն է։ Դրանում արձանագրված է, որ ՍՍՀՄ-ում ամբողջ իշխանությունը պատկանում է ժողովրդին։ Տեղական սովետների ընտրական կամպանիան, հատկապես ընտրությունների օրը, նոր ուժգնությամբ ցուցադրեց սովետների երկրում իշխանության իսկական ժողովրդական բնույթը։

Հիմնական օրենքի նախագիծը, ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թվականի մայիսյան պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը լավատեսության և ոգեշնչման նոր կենարար աղբյուր են երկրի միլիոնավոր աշխատավորների համար։ Եվ դա զգացվում էր քվեարկության հանդիսավոր տրամադրության այն մթնոլորտում, որ տիրում էր 1977 թվականի հունիսի 19-ին։ Մարդիկ ընտրական տեղամասեր էին գնում՝ լի հպարտությամբ իրենց երկրի և հանրապետության հսկայական նվաճումների համար, Սովետական Միության քաղաքացի լինելու, զարգացած սոցիալիստական հասարակության անդամ լինելու երջանկության համար։

Ընտրությունների օրը հանրապետության 1.500.367 ընտրողներ, այսինքն՝

փաստորեն ամբողջ չափահաս բնակչությունը, իրենց ձայնը տվեցին տեղական սովետների դեպուտատության թեկնածուների օգտին, որոնց առաջադրել էր ինքը՝ ժողովուրդը, իր միջավայրից. դրանք կոմունիստներ են և անկուսակցականներ, բնակչության բոլոր խավերի ներկայացուցիչներ, բոլոր պրոֆեսիաների, տարբեր ազգությունների պատկանող մարդիկ:

Ժողովրդի 26.592 ընտրյալներ ընտրողներից ստացան պետական իշխանության տեղական մարմիններում, ժողովրդական իշխանության մարմիններում նրանց ներկայացնելու վստահության պատվավոր և միևնույն ժամանակ պատասխանատու մանդատը:

Ժողովրդի մեծ վստահությամբ օժտվածների թվում են հանրապետության աշխատավորների տարբեր սերունդների առավել հեղինակավոր, գաղափարապես հասուն մարդիկ: Ընտրված դեպուտատների 69,3 տոկոսը բանվորներ ու կոլտնտեսականներ են, 48,7 տոկոսը՝ կանայք, յուրաքանչյուր երրորդը՝ 30 տարեկանից ցածր է: Կոմունիստները կազմում են ժողովրդի ընտրյալների 42,4 տոկոսը, մյուսները անկուսակցականներ են: Դեպուտատները պետք է տնօրինեն պետական գործերը, արդյունավետ իրականացնեն ընտրովի մարմինների՝ սովետների լայն լիազորությունները, լրիվ օգտագործեն ժողովրդի ընտրյալի այն իրավունքներն ու հնարավորությունները, որոնք վավերագրված են դեպուտատների ստատուսի մասին օրենքով:

Նոր գումարման տեղական սովետները իրենց գործունեության մեկնարկում բարի ողջերթ ստացան ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության այս տարվա հունիսի 17-ի նիստում ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթով:

Ամեն ինչում արդարացնել ժողովրդի վստահությունը, ցուցաբերել նախաձեռնություն և հաստատակամություն, մշտապես գտնվել պետության շահերի, ժողովրդի շահերի պաշտպանության դիրքերում՝ սա է յուրաքանչյուր դեպուտատին, ժողովրդի յուրաքանչյուր ընտրյալին տրվող գլխավոր պատվիրանը:

Ընկեր դեպուտատնե՛ր: ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծի ամբողջ հարուստ բովանդակությունը և ուղղությունը մեծ հնարավորություններ են բացում սովետների գործունեության հետագա բարելավման, նրանց կողմից նոր, առավել բարդ ու բազմազան այն խնդիրների լուծման համար, որոնք բխում են ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառից և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նիստում նրա ելույթից:

Իր ելույթում ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Սահմանադրության նախագիծը մեկ անգամ ևս ընդգծում է, որ բոլոր սովետները՝ գերագույն և տեղական, կազմում են պետական իշխանության մարմինների միասնական սիստեմը, համաժողովրդական պետության քաղաքական հիմքը:

Կոմունիստական կուսակցությունը միշտ էլ ելել է այն բանից, որ մեր յուրաքանչյուր սովետ գերագույն իշխանության մի մասնիկ է, որ նա ոչ միայն օժտված է իր իրավասությանը վերապահված բոլոր հարցերը լուծելու լիազորություններով, այլև հանդես է գալիս որպես համապետական որոշումների կիրառող: Դա, ընկերներ, բացառիկ կարևոր սկզբունք է: Բարձրագույն և տեղական մարմինների այդպիսի միասնությունը, տեղերի նախաձեռնության վրա գերագույն իշխանության հենվելը արտացոլում են սովետների գլխավոր էությունը, նրանց անխզելի կապը ժողովրդական զանգվածների հետ»:

«... Սովետները,— շարունակում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— ժողովրդի կենդանի, շարժուն, մշտանորոգ կազմակերպություն են: Ճիշտ այնպես, ինչպես իր ժամանակին նրանք կարողացան ընդհանուր հունի մեջ միավորել մասսաների հեղափոխական շարժումը, նրանց ջանքերը սոցիալիզմի կառուցման գործում, այնպես էլ այժմ, հասուն սոցիալիզմի պայմաններում, սովետների աշխատանքը է՛լ ավելի լրիվ պետք է ներառնի պայքարը արտադրության արդյունավետության բարձրացման համար, կուսակցության նախատեսած սոցիալական լայն ծրագրի կատարման համար, մեր սոցիալիստական դեմոկրատիայի բոլոր կողմերի զարգացման համար, այսինքն կոմունիզմի կառուցման խնդիրների լուծման համար»:

Այսպիսով, խոսքը վերաբերում է Գերագույն սովետի, տեղական սովետ-



ների մեծ, համապարփակ լիազորությունների հետևողական իրականացմանը, օրենսդրության զարգացման նկատմամբ անդուլ ուշադրությանը, օրենքների և օրենսդրությունների խստիվ ու անշեղ կատարմանը, կառավարման, վարչական մարմինների աշխատանքի առավել նպատակայաց վերահսկողությանը, ընտրողների պատվիրանների հետևողական իրականացմանը, մշտական հանձնաժողովների և դեպուտատական խմբերի ակտիվացմանը, իրենց բազմակողմանի ֆունկցիաների իրականացման համար հարցապնդում անելու իրավունքը դեպուտատների կողմից ավելի ակտիվորեն օգտագործելուն, ընտրողների հետ դեպուտատների մշտական կապին, նրանց առջև պարբերաբար հաշվետու լինելուն և պետական իշխանության մարմինների գործնական աշխատանքի մասին նրանց սիստեմատիկաբար իրազեկ պահելուն և, վերջապես, Գերագույն սովետի, նրա նախագահության կողմից տեղական սովետների գործունեությանը ցույց տրվող ղեկավարությունը կատարելագործելուն:

Խոսքը վերաբերում է սովետների գործկոմների ապարատների աշխատանքի ոճի և մեթոդների կատարելագործմանը, սոցիալ-տնտեսական, կուլտուր-կենցաղային խնդիրների լուծման գործում նրանց դերի ակտիվացմանը, տեղական սովետների մասին գործող օրենքների հետևողական կատարմանը, քաղաքացիների ընդունելությանը, նրանց առաջարկությունների, նամակների ու գանգատների քննարկման աշխատանքի օրինակելի դրվածքին, որի ժամանակ բացառվեն քաշքշուկը, բյուրոկրատիզմի և ինքնաապահովագրման փաստերը: Անհրաժեշտ է այնպես անել, որ յուրաքանչյուր քաղաքացի վստահ լինի, որ իր արդարացի և օրինական խնդրանքը և առաջարկությունները ժամանակին քննության կառնվեն, իսկ չհիմնավորված պահանջների ու գանգատների մերժման դեպքում ինքը կստանա սպառիչ պատասխան:

Պետք է ասել, որ կենսագործելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, հանրապետության Գերագույն սովետը և նրա նախագահությունը մի շարք միջոցառումներ իրականացրին այդ հարցերի կապակցությամբ, որոնք ստացան Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հավանությունը: Դրանք նկատելիորեն բարելավեցին և աշխուժացրին սովետների գործունեությունը կենտրոնում և տեղերում: Այդ միջոցառումների թվում պետք է նշել հանրապետությունում Գերագույն սովետի դեպուտատի միասնական օր անցկացնելը: Անցկացված երեք դեպուտատական միասնական օրվա ընթացքում դեպուտատների հետ հանդիպումներին մասնակցել են 261 հազար ընտրողներ, դեպուտատների մոտ ընդունելության են եղել 10.951 քաղաքացիներ: Իրենց ընտրողների հետ դեպուտատների կապերի ամրապնդման այդ արդյունավետ ձևը լայն արձագանք է գտնում բնակչության մեջ: Ավելի ու ավելի մեծ չափով է կիրառվում դեպուտատական հարցապնդումների պրակտիկան ինչպես Գերագույն սովետի, այնպես էլ տեղական սովետների նստաշրջաններում: Բարելավվում է քաղաքացիների ընդունելության կազմակերպման, նրանց առաջարկությունների, նամակների ու գանգատների քննարկման աշխատանքը: Հանրապետության Գերագույն սովետը և տեղական սովետները սկսել են ավելի մեծ ուշադրություն նվիրել մշտական հանձնաժողովների աշխատանքի կազմակերպման, շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային սովետների մասին օրենքների կատարման հարցերին:

Հանրապետության Գերագույն սովետի, նրա նախագահության, բոլոր տեղական սովետների առաջնահերթ պարտքն է՝ ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նիստում նրա ելույթում առաջադրված խնդիրներից, մշակել և իրականացնել խոշոր մասշտաբների միջոցառումներ պետական իշխանության մարմինների ամբողջ գործունեության հետագա կատարելագործման նպատակով:

Սովետական Հայաստանը, ինչպես որ բոլոր միութենական հանրապետությունները, գտնվելով եղբայրական ժողովուրդների միասնական ընտանիքում, անցել է վերափոխությունների և մեծագործությունների այն պանծալի ուղին, որ այնպես վառ ու ճշմարտացի արտացոլված է և ընդհանրացված ՍՍՀՄ նոր

Սահմանադրության նախագծի մեջ։ Այդ նախագծի համաժողովրդական քննարկումը և ապա սույն թվականի հոկտեմբերին ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանում նրա հաստատումը հնարավորություններ կստեղծեն միութենական բոլոր հանրապետությունների, այդ թվում նաև մեզ համար, սկսելու Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության նոր Սահմանադրության մշակման աշխատանքը։ Ներկա նստաշրջանում մենք պետք է հաստատենք այդ փաստաթղթի պատրաստման սահմանադրական հանձնաժողով այն հաշվով, որպեսզի քննարկումից հետո 1978 թվականի սկզբներին Սահմանադրությունը հաստատվի հանրապետության Գերագույն սովետի նստաշրջանում։ Համապատասխան աշխատանք պետք է տարվի Հայկական ՍՍՀ-ի պետական հիմնի խմբագրման ուղղությամբ։

Ընկեր դեպուտատնե՛ր։ Ներկայումս ՍՍՀՄ Սահմանադրության նախագծի քննարկումը գտնվում է հանրապետության ամբողջ հասարակական-քաղաքական կյանքի կենտրոնում։ Քիչ բան չի արված։ Բայց դեռ շատ բան էլ պետք է արվի։ Ժամանակը, ընկերներ, շատ սուղ է. մնում է ընդամենը երկու ոչ լրիվ ամիս՝ հուլիսը և օգոստոսը։ Այդ ժամանակամիջոցում մենք պետք է շարունակենք և ակտիվացնենք ՍՍՀՄ Սահմանադրության նախագծի առավելագույնս լայն, ազատ՝ իսկական գործարար քննարկումը ապահովելու աշխատանքը, հասնենք այն բանին, որ այդ գործում առավել լրիվ ներգրավվեն աշխատավորական մասսաները, բնակչության բոլոր խավերը։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում նշեց, որ դա առաջնահերթ կարևորություն ունեցող գործ է մեր բոլոր կազմակերպությունների համար, մեր բոլոր կադրերի համար, սովետների կենսական գործը։ Նրանք կոչված են գործնականում ընդգրկելու ամբողջ բնակչությանը, երկրի հիմնական օրենքի նախագծի քննարկմանը տալու ճշգրիտ ու պարզորոշ քաղաքական ուղղություն։ Այս ամենը նախատեսվում է հանրապետությունում ՍՍՀՄ Սահմանադրության նախագծի քննարկման կազմակերպման միջոցառումների ծավալուն պլանով, որ մշակել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմը։

Մենք պետք է ձգտենք, որ քննարկումն ըստ ամենայնի նպաստի բարելավելու գործերի վիճակը հանրային արտադրության բոլոր տեղամասերում, մեր կենսագործունեության բոլոր ոլորտներում։

Սովետների կարևոր խնդիրն է ակտիվորեն մասնակցել երկրի հիմնական օրենքի նախագծի քննարկման, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության սույն թվականի հունիսի 17-ի նիստում նրա ելույթի մեջ շարադրված դրույթների և հետևությունների պարզաբանման ագիտացիոն-պրոպագանդիստական լայն աշխատանքի կազմակերպմանը։

Քաղաքական այդ կարևոր աշխատանքում հարկավոր է ավելի ակտիվորեն ներգրավել դեպուտատներին, ժողովրդական տնտեսության մասնագետներին, գիտնականներին, բոլոր գաղափարական հիմնարկներին, պրոպագանդիստական ճակատի բոլոր աշխատողներին։

ՍՍՀՄ Սահմանադրության նախագծի պարզաբանման ու պրոպագանդման աշխատանքի գլխավոր բովանդակությունը, ինչպես նշվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումում, պետք է դառնան՝ կոմունիստական հասարակարգի կառուցման, էկոնոմիկայի, կուլտուրայի, գիտության զարգացման ասպարեզում սովետական ժողովրդի նվաճումների համակողմանի լուսաբանումը, ժողովրդի կյանքի նյութական բարեկեցության և նրա կուլտուրական մակարդակի անշեղ աճի լայն ցուցադրումը, աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծման, սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակի ապահովման ու ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման գործում ՍՄԿԿ-ի ղեկավար դերի վառ բացահայտումը, սովետական պետության մարդասիրական էության խոր պարզաբանումը, պետություն, որը ամեն ինչից բարձր է դասում աշխատավորների շահերը, ամբողջ ժողովրդի շահերը, սովետական հասարակարգի դեմոկրատիզմի, սովետական դեմոկրատիայի քաղաքական, տնտեսական և սոցիալական հիմքերի համոզիչ



ցուցադրումը, դեմոկրատիա, որը երաշխավորում է քաղաքացիների իսկական ազատությունն ու իրավահավասարությունը, սովետական սոցիալիստական ապրելակերպի հետևողական պրոպագանդումը, կապիտալիստական հասարակարգի հակամարդկային էության մերկացումը, բուրժուական հասարակության պայմաններում անհատի իրավունքների և ազատությունների ռեալ երաշխիքների բացակայության փաստարկված ցուցադրումը։

ՍՄԿԿ XXV համագումարի կենարար գաղափարները, մեր հասարակության հետագա տնտեսական, սոցիալական և կուլտուրական զարգացման նրա մշակած ծրագիրը, այդ ծրագրի հետևողական և անշեղ կենսագործման, սովետական ժողովրդի և ամբողջ առաջադեմ մարդկության հոբելյանական մեծ տոնի՝ Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության 60-ամյակի համաժողովրդական նախապատրաստության և արժանավայել դիմավորման ուղղությամբ ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական և քաղաքական հսկայական աշխատանքը, նոր Սահմանադրության նախագծի քննարկումը հանդիսանում են քաղաքական և աշխատանքային նոր, հզոր այն վերելքի անսպառ սնուցող հողը, որ ներկայումս տիրում է ամբողջ երկրում և մեր հանրապետությունում։

Հանրապետության բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, ժողովրդական մտավորականությունը, բոլոր աշխատավորները, սովետական յուրաքանչյուր մարդ իր պատիվն ու պարտականությունն է համարում հնգամյակի երկրորդ, հոբելյանական տարվա համար ստանձնած սոցիալիստական պարտավորությունների լրիվ կատարումը։ Հանրապետության կուսակցական կազմակերպության ղեկավարությամբ նրանք պայքարում են իրենց մեծ տոնը արժանավայել դիմավորելու, հոբելյանական տարին աշխատանքային նոր, բարձր նվաճումներով նշանավորելու համար։ Այդ են վկայում անցած կիսամյակի լարված աշխատանքի արդյունքները։

Արդյունաբերության աշխատողները ժամկետից շուտ՝ հունիսի 27-ին զեկուցեցին արդյունաբերական արտադրանքի իրացման և արտադրության կիսամյա պլանների կատարման մասին։ Պլանից ավելի իրացված է 54,9 միլիոն ռուբլու արտադրանք, թողարկված է 56,3 միլիոն ռուբլու արտադրանք։ Աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 3,9 տոկոսով։ Արդյունաբերական արտադրության ծավալների աճը, անցած տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, կազմում է 8 տոկոս։ Ավելացավ պետական որականիշով թողարկվող արտադրատեսակների թիվը և դրանց տեսակարար կշիռը։ Ընդհանուր առմամբ բարելավվեցին արդյունաբերության տեխնիկատնտեսական ցուցանիշները։

Ներկայումս կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների, արդյունաբերական ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունների և կոլեկտիվների խնդիրն է՝ քննադատորեն վերլուծել արդյունաբերական արտադրության մեջ իրենց կիսամյա աշխատանքի արդյունքներն այն հաշվով, որպեսզի յուրաքանչյուր ձեռնարկություն, յուրաքանչյուր մինիստրություն և գերատեսչություն ամբողջությամբ և լիովին կատարի տարեկան պլանները և ստանձնած պարտավորությունները։ Պետք է հասնել այն բանին, որպեսզի հանրապետությունում չլինի ոչ մի ետ մնացող ձեռնարկություն, որպեսզի ամեն մի ձեռնարկություն գործի արդյունավետ և թողարկի բարձրորակ արտադրանք։

Հանրապետության գիտնականները հաջողությամբ են աշխատում գիտական պրոբլեմների մշակման և հանրապետության ժողովրդական տնտեսության առջև դրված գործնական խնդիրների լուծման ուղղությամբ։

Գյուղատնտեսության զարգացման առաջին կիսամյակի արդյունքները վկայում են, որ հոբելյանական տարում դաշտերի և ֆերմաների աշխատավորների առջև դրված խնդիրները ամբողջությամբ վերցրած կկատարվեն։

Աճեցված է լավ բերք հողագործության բոլոր կուլտուրաների գծով։ Մեր խնդիրն է՝ անկորուստ հավաքել բերքը։ Դրա համար անհրաժեշտ է հետևողականորեն իրականացնել ագրոտեխնիկական բոլոր միջոցառումները, կազմակերպել գյուղատնտեսության, արդյունաբերության և առևտրի բոլոր օղակների

ներդաշնակ գործողությունները՝ բերքահավաքը և հումքի մշակումը ժամանակին իրականացնելու համար:

Որոշակի հաջողությունների են հասել նաև անասնապահները: Կաթի, մսի, ձվի, բրդի արտադրության և պետական վաճառքի պլանը գերակատարվել է: Անցած տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ պետությանը վաճառվել է 11,3 տոկոսով ավելի միս, 3,4 տոկոսով ավելի կաթ, 10,6 տոկոսով ավելի ձու, 21,7 տոկոսով ավելի բուրդ: Մեկ կովի կաթնատվությունը աճել է ավելի քան 50 կիլոգրամով:

Հարվածային ճակատ է եղել և մնում է կերի կուտակումը: Ներկայումս լայն աշխատանք է տարվում կոշտ և հյութալի կերերի կուտակման ուղղությամբ: Խնդիրն այն է, որպեսզի այս տարի կուտակվի կերի ռեկորդային քանակ՝ 2 միլիոն 200 հազար տոննա: Դրա վրա պետք է սևեռել գյուղի մարդկանց ուշադրությունը:

Գյուղատնտեսության աշխատողները պարտավոր են հետևողականորեն պայքարել կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկան ամրապնդելու, տնտեսությունների ապրանքայնությունն ավելացնելու, շահութաբերությունը մեծացնելու, վնասով աշխատող տնտեսությունների թիվը շեշտակիորեն նվազեցնելու համար:

Որոշակի տեղաշարժեր կան կապիտալ շինարարության ասպարեզում: Կապալային աշխատանքների պլանը ամբողջությամբ վերցրած հանրապետությունում կատարվել է 102 տոկոսով, կապալային աշխատանքների ծավալի աճը կազմում է 4 տոկոս:

Դրա հետ մեկտեղ մենք պետք է ամենայն պարզությամբ ասենք, որ էկոնոմիկայի այս ճյուղում դեռևս շատ են չլուծված հարցերը: Մեր շինարարների պարտքն է բոլոր ջանքերն ուղղել թերությունների վերացմանը և ապահովել շինմոնտաժային աշխատանքների պլանի կատարումը, հատկապես հիմնական ֆոնդերի գործարկման գծով:

Այսօր մենք պետք է պահանջենք շինարարներից՝ ապահովել նաև բնակարանների, դպրոցների, մանկական նախադպրոցական հիմնարկների, հիվանդանոցների, կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարության և գործարկման պլանների անպայման կատարումը և գերակատարումը, կառույցներ, որոնք անմիջական առնչություն ունեն տասներորդ հնգամյակի սոցիալական ծրագրի հաջող կենսագործման հետ:

Կատարվում են ապրանքաշրջանառության և կենցաղային սպասարկման պլանները: Դրանց ծավալների աճը համապատասխանաբար կազմում է 7,1 տոկոս և 13,4 տոկոս: Ապահովվում է բնակչության կայուն մատակարարումը պարենային ապրանքներով: Ներկայումս բանջարեղենի և պտղի ամառային առևտրի բուռն ժամանակաշրջանն է: Կարևոր խնդիր է՝ բարձրացնել պարենային այդ ապրանքների առևտրի կուլտուրան, ապահովել բնակչության պահանջմունքները բարձրորակ մթերքի նկատմամբ:

Ինչպես տեսնում ենք, մենք որոշակի հաջողությունների ենք հասել: Սակայն մեզանում քիչ չեն նաև թերությունները: Ձեռնարկությունների և կազմակերպությունների կոլեկտիվների ժողովներում Սահմանադրության նախագծի քննարկման ժամանակ հանդես եկող ընկերները նշում են այդ թերությունները, միջոցներ առաջարկում դրանք վերացնելու, ձեռնարկությունների և կազմակերպությունների աշխատանքը բարելավելու համար:

Առաջարկություններ են արվում գիտատեխնիկական պրոգրեսի արագացման, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման, աշխատանքի արտադրողականության աճի ապահովման, ամբողջ աշխատանքի որակի բարելավման ուղղությամբ:

Կուսակցական, սովետական, տնտեսական և մյուս բոլոր մարմինների ու կազմակերպությունների պարտքն է ժամանակին արձագանքել այդ առաջարկություններին, անհրաժեշտ օպերատիվ միջոցներ ձեռնարկել դրանք կենսագործելու համար:

Այդ ամբողջ աշխատանքում ամենաակտիվ մասնակցությունը պետք է



ունենան տեղական սովետները: Խնդիրն այն է, որպեսզի յուրաքանչյուր դեպուտատ, տեղական յուրաքանչյուր սովետ գործարար և արդյունավետ նպաստի իր տերիտորիայում գտնվող ձեռնարկությունների և կազմակերպությունների առջև դրված խնդիրների հաջող լուծմանը:

Հանրագումարի բերելով, կարելի է ասել, որ Սահմանադրության նախագծի քննարկումը շատ բանով օգնեց հանրապետության ամբողջ հասարակական կյանքի հետագա ակտիվացմանը: Քննարկումը նոր ստեղծագործական ուժեր արթնացրեց աշխատավորների շրջանում, լայն թափ հաղորդեց սոցիալիստական մրցությանը:

Կուսակցական կազմակերպությունները, աշխատավորների դեպուտատների սովետները, տնտեսական ղեկավարները պետք է օգտագործեն այդ հանգամանքը և բոլոր աշխատավորների ուժերն ուղղեն հնգամյակի երկրորդ տարվա բարդ ու մասշտաբային խնդիրների կատարման նպատակին: Աշխատանքի լավագույն կազմակերպման, հանձնարարված գործի հանդեպ յուրաքանչյուրի պատասխանատվության բարձրացման ճանապարհով, թերությունների արագ հաղթահարման ճանապարհով մենք կարող ենք հասնել նոր հաջողությունների, բարելավել ընթացիկ տարվա՝ նոր Սահմանադրության ընդունման, մեծ Հոկտեմբերի 60-ամյակի տարվա, քաղաքական և տնտեսական արդյունքները:

Մեր վսեմ պարտքն է, մեր պատվավոր պարտականությունը՝ արժանի բաժին բերել ՍՍՀՄ Սահմանադրության նախագծի՝ համաժողովրդական քննարկմանը, նպաստել այդ աշխատանքի լայն ծավալմանը, նոր թափ հաղորդել մեծ Հոկտեմբերի 60-ամյակի պատվին ծավալվող սոցիալիստական մրցությանը, բազմապատկել ջանքերը կոմունիստական կուսակցության պատմական նախաձեռնումների կենսագործման պայքարում:

Մեծ Հոկտեմբերի 60-ամյակը կպսակվի մեր կուսակցության կյանքի, բազմազգ սովետական պետության պատմության աչքի ընկնող իրադարձությամբ՝ ՍՍՀՄ նոր Սահմանադրության ընդունումով:

Ընկեր դեպուտատնե՛ր:

Մոտենում է այն պահը, երբ սովետական մեր բազմազգ հայրենիքի մայրաքաղաքում՝ հերոս քաղաք Մոսկվայում, Կրեմլի Սպասսկի աշտարակի կուրանտները վեհությամբ և հպարտորեն կհաշվեն հիրավի պատմական 60-րդ տարելիցը այն անմոռանալի օրվա, երբ լեգենդար «Ավրորա»-ի համազարկերը բովանդակ աշխարհին, մեր մոլորակի աշխատավոր ամբողջ մարդկությանը ավետեցին 20-րդ դարի գլխավոր իրադարձության՝ մեծ Հոկտեմբերի հաղթանակի լուրը, աշխարհում առաջին սոցիալիստական պետության ծնունդը, մարդկության զարգացման նոր դարագլխի սկիզբը:

Այսօր, քննարկելով Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության նոր Սահմանադրության նախագիծը, լիովին և ամբողջովին հավանություն տալով այդ պատմական փաստաթղթին, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը մեկ անգամ ևս կարտահայտի հայ ժողովրդի, հանրապետության բոլոր աշխատավորների անհողդողդ նվիրվածությունը մեծ Հոկտեմբերի դրոշին, Վ. Ի. Լենինի անմահ գաղափարներին, սոցիալիստական արդարության, խաղաղության և բարեկամության, ժողովուրդների եղբայրական համագործակցության գաղափարներին, կարտահայտի խոր հարգանքի և երախտագիտության զգացում Սովետական Միության փառապանծ կոմունիստական կուսակցությանը, նրա փորձված մարտական շտաբին՝ լենինյան Կենտրոնական կոմիտեին՝ այն վիթխարի աշխատանքի համար, որն ապահովում է մեր երկրի փառքի ու հզորության ծաղկումը, ժողովուրդների խաղաղ ստեղծագործ աշխատանքը, Սովետական մեծ Միության վսեմ ու անհողդողդ միջազգային հեղինակությունը:

(ԸՆԿ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՅՑՈՒՄԸ ԼՍՎԵՑ ՄԵԾ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՄԲ ԵՎ ԲԱԶՄԻՑՍ ԸՆԴՀԱՏՎՈՒՄ ԷՐ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ):




# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ

Լ. Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր

ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ եղել ու մնում են զանազան դասակարգերի, նրանց կուսակցությունների և այլ կազմակերպությունների տեսադաշտում: Այդ պրոբլեմները հատկապես հրատապ են մեր օրերում երկու հակադիր հասարակական-քաղաքական սիստեմների միջև գաղափարական պայքարի սրման պայմաններում:

Տակավին սովետական իշխանության արշալույսին բուրժուական գաղափարախոսները հանդես եկան նոր քաղաքական սիստեմի դեմ և այսօր էլ շարունակում են հերյուրանքներ տարածել սոցիալիստական հասարակության սոցիալական կառուցվածքի վերաբերյալ: Ինչպես նշվում է «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշման մեջ, հենց Հոկտեմբերի հաղթանակով բանվոր դասակարգի իշխանության հաստատումը «գործնականում ապահովեց ազատություն ու դեմոկրատիա աշխատավորների վիթխարի մեծամասնության համար՝ չտեսնված, անհնարին կապիտալիստական ամեն մի երկրի համար»:

ՀԱՅՏՆԻ Է, ՈՐ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ պատմական երևույթ է: Այն ծագել է սոցիալ-տնտեսական անհավասարության առաջացման և հասարակության՝ դասակարգերի բաժանման հետ: Այդ սիստեմի առանցքը պետությունն է, որպես իշխող դասակարգի դիկտատուրայի իրականացման գլխավոր գործիք: Դասակարգային պայքարի զարգացման ու սրման հետ զուգընթաց պետության կողքին երևան եկան նաև գոյություն ունեցող դասակարգերի զանազան հաստատություններ, կազմակերպություններ, քաղաքական կուսակցություններ, կազմելով հասարակության քաղաքական սիստեմը, որտեղ գլխավորը տիրապետող դասակարգի պետական-իրավական հաստատություններն են: Այսպիսով, քաղաքական սիստեմն առավելապես



արտացոլում է սոցիալ-դասակարգային հարաբերությունների էությունը և տվյալ հասարակության կառավարման կազմակերպումը:

Հասարակության քաղաքական սիստեմը փոփոխվում է արտադրության եղանակի և դասակարգային պայքարում ուժերի հարաբերակցության զարգացման պրոցեսում: Ուստի, անտագոնիստական հասարակարգում այդ սիստեմի համար բնորոշ են հակամարտ հակասությունները:

Առանձնապես բարդ ու հակասական է կապիտալիստական հասարակության քաղաքական սիստեմը: Հայտնի է, որ այդ հասարակության մեջ կան մի շարք դասակարգեր ու սոցիալական խմբեր: Բայց կապիտալիզմի քաղաքական սիստեմի բովանդակությունն ու զարգացումը բնորոշվում են երկու հիմնական դասակարգերի՝ բուրժուազիայի և պրոլետարիատի միջև մղվող անհաշտ պայքարով:

Դասակարգային պայքարի ծավալման և պրոլետարիատի դասակարգային գիտակցության զարգացման հետ զուգընթաց առաջանում են նրա հասարակական-քաղաքական կազմակերպություններն ու դրանց բարձրագույն ձևը՝ կուսակցությունը: Դրանք սկսում են ավելի ու ավելի մեծ դեր խաղալ կապիտալիստական հասարակության բոլոր ոլորտներում, մասնավորապես քաղաքական սիստեմում:

Բուրժուազիան ձգտում է արգելել աշխատավորների կազմակերպությունների գործունեությունը, դրանք համարել օրենքից դուրս, փակել դրանց մուտքը քաղաքական հաստատությունները, զրկել պայքարի լեգալ ձևերից: Սակայն, ռեակցիայի ուժեղացման պայմաններում անգամ, կոմունիստական և մյուս առաջադիմական կուսակցությունները գտնում են մասսաների հետ կապի նորանոր ձևեր և հսկայական ազդեցություն ունենում հասարակական կյանքի տարբեր կողմերի վրա:

Ուստի, այդ հասարակության քաղաքական սիստեմում հարկավոր է նրա տիրապետող մասը՝ բուրժուազիայի դիկտատուրան, որը պաշտպանում է կապիտալիզմի տնտեսական բազիսը և նրա սոցիալական կարգը, տարբերել նրա մյուս մասից՝ աշխատավորների կազմակերպություններից և հաստատություններից, որոնք հանդես են գալիս ճնշված դասակարգերի ու ազգերի շահերի պաշտպանությամբ, հանուն սոցիալական առաջընթացի:

ԲԱՑԱՀԱՅՏԵԼՈՎ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ հասարակության տնտեսական և սոցիալ-քաղաքական կյանքի անտագոնիզմը, գիտական կոմունիզմի հիմնադիրները ցույց են տվել դրա անխուսափելի կործանումը և անցումը կոմունիստական ֆորմացիայի: Քաղաքական բնագավառում նրանց ուսմունքի կենտրոնական գաղափարը կապիտալիստական ֆորմացիայից կոմունիստականի անցման ժամանակաշրջանում պրոլետարիատի դիկտատուրայի պատմական անհրաժեշտության համակողմանի հիմնավորումն է: Պատմական փորձը և արդի դարաշրջանի ռեալ իրականությունն անհերքելիորեն ապացուցել են այդ ուսմունքի ճշմարտացիությունը:

Ուսումնասիրելով կապիտալիզմից սոցիալիզմին անցման շրջանի քաղաքական սիստեմը, անհրաժեշտ է նկատի ունենալ, որ դեռևս պահպանվում են տապալված դասակարգերի մնացորդները, նրանց կուսակցություններն ու կազմակերպությունները, որոնք հանդես են գալիս նոր հասարակարգի կառուցման դեմ: Դա պրոլետարիատի դիկտատուրայի դարաշրջանում, նոր պայմաններում և նոր ձևերով շարունակվող դասակարգային պայքարի օրինաչափությունն է: Այդ ժամանակաշրջանում առկա են նաև ուրիշ դասակարգեր ու կազմակերպություններ, որոնք ձգտում են համագործակցել բանվոր դասակարգի և նրա կուսակցության հետ՝ սոցիալիզմի կառուցման գործում: Հասարակության քաղաքական սիստեմն այդ ժամանակաշրջանում արտացոլում է դասակարգային ուժերի հարաբերակցությունը, ընդգրկում զանազան կուսակցություններ ու կազմակերպություններ, որոնք արտահայտում են գոյություն ունեցող դասակարգերի հարաբերություններն ու շահերը: Դրանով է

պայմանավորված հասարակության քաղաքական սիստեմի բազմակուսակցականության հնարավորությունը սոցիալիզմի կառուցման ժամանակաշրջանում:

Այդ է վկայում մի շարք սոցիալիստական երկրների փորձը, որտեղ հաջողությամբ համագործակցում են մի քանի քաղաքական կուսակցություններ՝ բանվոր դասակարգի կուսակցության ղեկավար դերի պայմաններում:

Հակառակ ռեալ իրականության, բուրժուական գաղափարախոսները շարունակում են կրկնել, թե իբր սոցիալիզմը բացառում է բազմակուսակցականությունը, հասարակության քաղաքական սիստեմի դեմոկրատիզմը: Ի դեպ, պատմական փորձը ցույց է տալիս, որ բազմակուսակցականությունը դեմոկրատական կազմակերպման չափանիշ չէ: Օրինակ, ի՞նչ է փոխվում ԱՄՆ-ի սոցիալ-տնտեսական և քաղաքական կարգում, երբ իշխանության գլուխ է անցնում դեմոկրատական կամ հանրապետական կուսակցությունը: Բացարձակապես ոչինչ: Կառավարման բոլոր օղակները մնում են բուրժուազիայի ձեռքին: Շարունակում են իշխել ֆինանսական կապիտալի մագնատները: Բայց այդ բանը չեն ցանկանում խոստովանել բուրժուական գաղափարախոսները: Նրանք չեն ցանկանում հասկանալ նաև, որ մարքսիստները չեն ժխտում բազմակուսակցականությունը և միակուսակցականությունը չեն համարում սոցիալիզմի քաղաքական սիստեմի միակ պայմանը:

Սոցիալիստական զարգացման ուղին բռնած ամեն մի երկրի քաղաքական սիստեմի բազմակուսակցականությունը կամ միակուսակցականությունը որոշվում է կոնկրետ պատմական պայմաններով:

Հայտնի է, որ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո բոլշևիկները մեծ նախաձեռնություն հանդես բերեցին, որպեսզի սովետական հանրապետության քաղաքական կյանքին մասնակցեն նաև մյուս կուսակցությունները: Սովետական կառավարության, ինչպես նաև տեղական սովետների կազմում որոշ ժամանակ կային այդպիսի կուսակցությունների ներկայացուցիչներ: Սակայն շուտով պարզվեց, որ նրանք ցանկանում էին սովետական հանրապետության մարմիններում տեղ գրավել թշնամական, հակահեղափոխական նպատակներով: Դրանով իսկ նրանք լրիվ մերկացրին իրենց որպես աշխատավոր զանգվածների թշնամիներ և հեռացան քաղաքական ասպարեզից:

Պատմական փորձը վկայում է, որ սոցիալիզմի կառուցման պրոցեսում այս կամ այն երկրի քաղաքական ավանդույթների և կոնկրետ պայմանների համեմատ կարող են ավելի տևականորեն գոյատևել և համագործակցել մի քանի կուսակցություններ: Դրանցից մի քանիսը ձուլվում են աշխատավորների կուսակցությունների հետ, իսկ սոցիալիզմի դեմ հանդես եկող կուսակցությունները վարկաբեկվում են իրենց և վերանում:

Հետևաբար, կապիտալիզմից սոցիալիզմին անցման ժամանակաշրջանում հասարակության քաղաքական սիստեմն իր զարգացման պրոցեսում անցնում է մի շարք փուլեր, բայց նրա հիմնական բովանդակությունը կազմում է պրոլետարիատի դիկտատուրան:

ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ զարգացման մեջ էական փոփոխություններ են տեղի ունենում սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակի շնորհիվ: Տեղի ունեցող փոփոխությունների առավել վառ արտահայտությունն է պրոլետարիատի դիկտատուրայի պետության վերածումը համաժողովրդական պետության և կոմունիստական կուսակցության վերածումը բանվոր դասակարգի առաջավոր ջոկատից՝ ամբողջ ժողովրդի կուսակցության: Այս կարևորագույն տեսական դրույթը, որն արտացոլում է սովետական հասարակության քաղաքական սիստեմի զարգացման դիալեկտիկան, առաջին անգամ ձևակերպվել էր ՍՄԿԿ ծրագրում: Այժմ այն վավերացվում է զարգացած սոցիալիզմի Սահմանադրության մեջ: «Կատարելով պրոլետարիատի դիկտատուրայի խնդիրները,— ասված է ՍՍՀՄ Սահմանադրության նախագծում,— սովետական պետությունը դարձավ համաժողովրդական պետություն: Աճեց կոմունիստական կուսակցության՝ ամբողջ ժողովրդի ավանգարդի, ղեկավար դերը»: Այստեղից հետևում է, որ զարգացած սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման պայմաններում հասարակության քաղաքական սիստեմն արտահայտում է սոցիալ-դասակարգային շահերի ու հարաբերությունների միասնությունը, այն ընդգրկում է կոմունիստական կուսակցության՝ ողջ ժողովրդի կուսակցության ղեկավարած համաժողովրդական պետությունը և հասարակական կազմակերպությունները:

Սովետական հասարակության զարգացման բոլոր փուլերում նրա քաղաքական սիստեմի մշտական կատարելագործման հիմքը սոցիալիստական դեմոկրատիայի անշեղ ընդլայնումն է: Կուսակցության գլխավոր խնդիրներից մեկը Վ. Ի. Լենինը համարում էր «Դեմոկրատիայի զարգացումը մինչև վերջը, այդպիսի զարգացման ձևերի հայտնագործումը, դրանց փորձարկումը պրակտիկայում...»: (Երկեր, հ. 25, էջ 588): Հենց այդ պատճառով էլ զարգացած սոցիալիզմի Սահմանադրության նախագծում նախատեսվում է մեր կուսակցության այն կարևորագույն ծրագրային պահանջի օրենսդրական վավերացումը, որ «Սովետական հասարակարգի քաղաքական սիստեմի զարգացման հիմնական ուղղությունը սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ծավալումն է»:

Սոցիալիստական դեմոկրատիայի բուռ ամենալայն ծավալման անհրաժեշտությունն ու հնարավորությունը արդի պայմաններում պայմանավորվում է մի շարք օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոններով: Դրանցից են, ամենից առաջ, կոմունիստական շինարարության աճած խնդիրները, որոնց լուծումն անհնարին է առանց հասարակության բոլոր անդամների ակտիվ ու ստեղծագործական մասնակցության:

Կոմունիզմի կառուցման առաջնահերթ խնդիրը նյութատեխնիկական բազայի ստեղծումն է, որը հնարավոր է իրականացնել արտադրությանն ու նրա կառավարմանը ժողովրդական զանգվածների ամենալայն մասնակցությամբ: Հասարակության անդամների անմիջական մասնակցությամբ սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման պրոցեսում կատարելագործվում են սոցիալիստական հասարակական հարաբերությունները:

Առանց սոցիալիստական դեմոկրատիայի բուռ ամենալայն ծավալման անհնարին է լուծել նաև կոմունիզմի կառուցման այնպիսի մի կարևոր խնդիր, ինչպիսին է նոր մարդու ձևավորումը և անհատի համակողմանի զարգացումը: Եվ դա հասկանալի է, քանի որ ինչքան ավելի շատ մարդ է մասնակցում հասարակական վերափոխմանը, հասարակության գործերի կառավարմանը, այնքան ավելի բարձր են նրանց ակտիվությունն ու նախաձեռնությունը, այնքան ավելի հաջող է առաջընթաց շարժումը, այնքան ավելի է արագանում հասարակության և անհատի զարգացումը:

Հակառակ այս օրինաչափությանը, սոցիալիզմի թշնամիները շարունակում են ծուռ հայելու մեջ ներկայացնել սոցիալիստական դեմոկրատիան, զրպարտել սովետական հասարակության քաղաքական սիստեմը: Վերջին ժամանակներս նրանք հանդես են գալիս «մարդու իրավունքների» կեղծ պաշտպանների դերում: Թվում էր, թե խոսքը պետք է վերաբերեր կապիտալիստական երկրների աշխատավոր զանգվածների իրավազուրկ դրության դատապարտմանը, իմպերիալիստական պետությունների ռեակցիոն ներքին ու արտաքին քաղաքականության մերկացմանը: Թվում էր, թե մարդու իրավունքների «պաշտպանները» բողոքի ձայնը կբարձրացնեն շահագործման ուժեղացման և գործազրկության ավելացման, աշխատավորներին և առաջադիմական կազմակերպություններին հասարակության կառավարմանը մասնակցելուց հեռու պահելու, հանցագործության, գանգստերիզմի և կապիտալի աշխարհի մյուս խոցերի աճի դեմ:

Սակայն աշխատավորների իրավունքների դեմ ռեակցիայի հարձակման փաստերը չեն հուզում հակակոմունիզմի գաղափարախոսներին: Նրանք իրենց

յական կազմակերպությունները. դարձան ժողովրդական դեպուտատների սովետներ:

Ժողովրդական դեպուտատների սովետների սոցիալական բնույթը պայմանավորված է կոմունիստական շինարարության պրոցեսներում նրանց դերի հետագա բարձրացմամբ: Ահա թե ինչու մեր կուսակցությունը մշտապես հոգում է սովետների իրավունքներն անշեղորեն ընդլայնելու և նրանց դերը բարձրացնելու մասին:

Սովետներն իրենց տերիտորիայում լուծում են տեղական նշանակություն ունեցող բոլոր հարցերը, իրենց իրավասությունների սահմաններում կոորդինացնում և վերահսկում բոլոր ձեռնարկությունների ու կազմակերպությունների աշխատանքը՝ անկախ նրանց գերատեսչական ենթակայությունից: ՍՄԿԿ XXV համագումարը նախատեսել է ընդունել նոր օրենքներ՝ երկրամասային, մարզային և օկրուգային սովետների իրավասություններն ընդլայնելու մասին: Ժողովրդական դեպուտատների սովետների համապարփակ իրավունքները օրենսդրականորեն վավերագրվում են երկրի նոր Սահմանադրության նախագծի մեջ: Դրա հետ մեկտեղ մեծ ուշադրություն է հատկացվում դեպուտատների դերի ու պատասխանատվության հետագա բարձրացմանը, սովետների նստաշրջանների և մշտական հանձնաժողովների աշխատանքի բարելավմանը, բնակչության առջև նրանց սիստեմատիկ հաշվետվության ապահովմանը և այլն:

Լենինյան ցուցումներին համապատասխան առաջնահերթ ուշադրություն է նվիրվում սովետների կազմում բանվորների ու կոլտնտեսականների ընտրությանը: Ներկայումս նրանք կազմում են ՍՍՀՄ Գերագույն սովետի և միութենական հանրապետությունների գերագույն սովետների դեպուտատների մոտ 50, իսկ տեղական սովետներում՝ ավելի քան 67 տոկոսը: Բոլոր դեպուտատների մոտ կեսը կանայք են, մոտավորապես մեկ երրորդը՝ մինչև 30 տարեկան երիտասարդներ:

Բնակչության ակտիվ մասնակցությունը սովետների աշխատանքին նրանց հաջող գործունեության գլխավոր պայմանն է: Ներկայումս սովետների հասարակական ակտիվն ընդգրկում է մոտ 30 միլիոն մարդ: Նրանք մեծ օգնություն են ցույց տալիս սովետների ամենօրյա աշխատանքում:

Սովետական համաժողովրդական պետության զարգացումը սովետների ու նրանց հասարակական մարմինների դերի բարձրացման հետ միասին ենթադրում է պետական կառավարչական ապարատի բոլոր օղակների գործունեության հետագա կատարելագործում այն հաշվով, որ այդ ապարատը դառնա ավելի պարզ, որակյալ, էժան ու օպերատիվ: Տնտեսական շինարարության ծավալի վիթխարի աճի կապակցությամբ առանձնապես բարձրանում է գիտական պլանավորման, կոորդինացման, հաշվառման ու վերահսկողության մարմինների դերը և կատարելագործվում նրանց աշխատանքը: Ընդլայնվում են նաև աշխատանքային կոլեկտիվների, վարչական և այլ մարմինների կազմակերպման ու գործունեության դեմոկրատական հիմունքները:

Կառավարման կազմակերպական կառուցվածքի ու մեթոդների հետագա կատարելագործման ասպարեզում կուսակցության նպատակասլաց գործունեության մեջ կարևոր է անցումը երկօղակ և եռօղակ սիստեմին՝ դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի մշտական ամրապնդման հիման վրա:

Հասուն սոցիալիզմի պայմաններում սովետական բազմազգ հասարակության քաղաքական սիստեմի զարգացման բնորոշ առանձնահատկությունն է սովետական ֆեդերացիայի հետագա կատարելագործումը: Սահմանադրության նախագծում գրված է, որ «ՍՍՀՄ-ը մարմնավորում է սովետական ժողովրդի պետական միասնությունը, բոլոր ազգերին ու ազգություններին համախմբում կոմունիզմի համատեղ կառուցման նպատակով»: Բոլոր միութենական հանրապետությունների պետական միասնության ամրապնդումը և նրանց սուվերեն իրավունքների հետագա ընդլայնումը կազմում է



մեր բազմազգ սոցիալիստական պետության զարգացման ու ամրապնդման օրինաչափությունը: Այդ հիման վրա տեղի է ունենում մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների է՛լ ավելի սերտ մերձեցում: Մեր բազմազգ հայրենիքի բոլոր ազգերի և ազգությունների եղբայրական բարեկամությունն ու միասնությունը ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության հաղթանակն են, սոցիալիզմի քաղաքական սիստեմի իսկական դեմոկրատիզմի վառ վկայությունը:

Սովետական հասարակարգի քաղաքական սիստեմի դեմոկրատիզմի հետագա զարգացման կարևոր ուղղությունն է հասարակական կազմակերպությունների դերի բարձրացումն ու ֆունկցիաների ընդլայնումը: Հասարակական կազմակերպությունների սիստեմը սոցիալիստական հասարակարգում ընդգրկում է բազմապիսի միավորումներ պրոֆեսիոնալ, ստեղծագործական, տարիքային և այլ հատկանիշներով: «Արհեստակցական միությունները, համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միությունը, կոոպերատիվ և մյուս մասսայական-հասարակական կազմակերպությունները,— նշված է Սահմանադրության նախագծում,— իրենց կանոնադրական խնդիրներին համապատասխան, մասնակցում են պետական և հասարակական գործերի կառավարմանը, քաղաքական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական հարցերի լուծմանը»: Զարգացած սոցիալիզմի պայմաններում նրանց դերի աճի պրոցեսը տեղի է ունենում երկու հիմնական ուղղություններով. առաջին՝ ընդլայնվում է հասարակական կազմակերպությունների մասնակցությունը պետական մարմինների աշխատանքին, երկրորդ՝ աստիճանաբար նրանց տնօրինությանն են անցնում պետական մարմինների կատարած շատ ֆունկցիաներ:

ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներում սահմանված են արհմիությունների հիմնական ֆունկցիաները, որոնք բխում են կոմունիզմի կառուցման խնդիրներից: Դրանք են՝ ժողովրդական լայն զանգվածների ներգրավումը արտադրության կառավարման մեջ, աջակցությունը էկոնոմիկայի ըստ ամենայնի զարգացմանը, աշխատանքի կարգապահության ամրապնդմանը և նրա արտադրողականության բարձրացմանը, պայքարը տնտեսման ու խնայողության համար, սոցիալ-կենցաղային հարցերի լուծումը, աշխատավորների իրավունքների ու շահերի պաշտպանությունը, նոր մարդու կոմունիստական դաստիարակումն ու նրա ձևավորումը, միջազգային կապերի զարգացումը ուրիշ երկրների աշխատավորների հետ, պրոլետարական համերաշխության ամրապնդումը:

«Սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը, նրա քաղաքական սիստեմի, բոլոր պետական և հասարակական կազմակերպությունների միջուկը,— ասված է Սահմանադրության նախագծում,— Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն է: ՍՄԿԿ-ն գոյություն ունի ժողովրդի համար և ծառայում է ժողովրդին»: Դրա վառ ու համոզիչ հաստատումն է սովետական ժողովրդի մեծ նվաճումը սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործում: Կուսակցությունը միավորում և կոորդինացնում է կառավարման բոլոր մարմինների գործունեությունը, ռեալ պայմաններ է ստեղծում սոցիալիստական դեմոկրատիայի ըստ ամենայնի զարգացման համար:

Սովետական քաղաքական սիստեմի դեմոկրատիզմի ըստ ամենայնի զարգացումը պահանջում է անընդհատ կատարելագործել իր իսկ՝ կուսակցության ղեկավար գործունեության ձևերն ու մեթոդները: «Սովետական հասարակության զարգացման դինամիզմը,— նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— կոմունիստական շինարարության աճող մասշտաբները, միջազգային ասպարեզում մեր գործունեությունը հրամայաբար պահանջում են անընդհատ բարձրացնել տնտեսության և կուլտուրայի զարգացման, մարդ-

կանց դաստիարակության, կուսակցական ղեկավարման մակարդակը, բարելավել մասսաների շրջանում տարվող կազմակերպչական և քաղաքական աշխատանքը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութեր, էջ 97)։

Հայտնի է, որ այս ուղղությամբ կուսակցությունը կիրառում է գիտականորեն հիմնավորված միջոցառումների մի ամբողջ սիստեմ։ Շարունակ կատարելագործվում են կուսակցական ղեկավարության և ներկուսակցական դեմոկրատիայի լենինյան սկզբունքները, կիրառվում են ընտրովի մարմինների սիստեմատիկ նորացումներ, բարձրանում է կուսակցական ժողովների, պլենումների և կոնֆերանսների, կուսակցության մյուս կոլեկտիվ մարմինների դերը։ Կիրառվող կուրսը ապահովում է կուսակցության քաղաքական և կազմակերպչական գործունեության մակարդակի բարձրացումը, սոցիալիստական կառավարման աշխատանքի ոճի ու մեթոդների կատարելագործումը, սովետական հասարակարգի քաղաքական սիստեմի բոլոր օղակների համախմբումը։

Այսպիսով, սովետական հասարակարգի քաղաքական սիստեմը Մեծ Հոկտեմբերի ծնունդն է։ «Հոկտեմբերյան հեղափոխությունը,— ասված է «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— մի այնպիսի սոցիալ-քաղաքական իրադարձություն է, որի վեհությունն ավելի ու ավելի խոր ու ցայտուն կերպով է բացահայտվում հասարակական առաջընթացի ուղիով մարդկության յուրաքանչյուր նոր քայլի հետ։

Հոկտեմբերի հաղթանակի, ռեալ սոցիալիզմի փորձի համաշխարհային պատմական նշանակությունն այն է, որ դրանք տվեցին աշխատավորության շահերի օգտին հասարակության ամենաարդարացի կազմակերպման օրինակ»։

Այդ օրինակը հասարակության քաղաքական սիստեմի զարգացման բնագավառում արտահայտվում է հասարակական կյանքի բոլոր ոլորտների կառավարման կազմակերպման իսկական դեմոկրատիզմի հաստատման, աշխատավորներին երաշխավորված իրավունքների ու ազատությունների վերապահման, պետական և հասարակական գործերին նրանց փաստական մասնակցության ապահովման մեջ։

Սոցիալիզմի քաղաքական սիստեմի իսկական դեմոկրատիզմը հարաճուն ներգործություն է ունենում դեմոկրատիայի ու սոցիալական առաջընթացի համար ճնշված դասակարգերի ու ժողովուրդների մղած հեղափոխական պայքարի ուժեղացման վրա։

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԶԱՐԳԱՑՈՒՄՆ ՈՒ ԾԱՂԿՈՒՄԸ

Հ. Զ. ԱՊՐԵՍՅԱՆ

ԼՐԱՆՈՒՄ Է ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ հաստատման վաթսուն տարին— համաշխարհային տարեգրության մի կարճ ժամանակահատված։ Սակայն Հոկտեմբերյան հաղթանակած հեղափոխությանը հաջորդած տասնամյակներն իրենց բովանդակությամբ, դինամիզմով ու նշանակությամբ հավասարը չունեն մարդկության ողջ պատմության մեջ։ Հոկտեմբերի վաթսունամյակը կարևոր ուղենիշ է սովետական ժողովրդի կյանքում, ողջ աշխարհի ազատագրական շարժման զարգացման մեջ (տե՛ս ՍՄԿԿ ԿԿ 1977 թվականի հունվարի 31-ի որոշումը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության մասին, «Սովետական Հայաստան», 1 փետրվարի 1977 թ.)։

Համակողմանի բացահայտելով այդ դրույթի խոր իմաստն ու ռեալ բովանդակությունը, որոշման մեջ ընդգծվում է, որ մեր երկրի աշխատավորները հաջողությամբ կատարեցին սոցիալիստական հեղափոխության ամենագլխավոր և ամենաբարդ՝ ստեղծարար խնդիրը։ Համաշխարհային կոմունիստական, ինչպես և ազատագրական շարժման համար այդ ունի տեսական ու գործնական վիթխարի նշանակություն։ Կուսակցության փաստաթղթի սույն դրույթը մի անգամ ևս բացահայտում է բուրժուական այն պնդումների սնանկությունը, թե իբր սոցիալիստական հեղափոխությունը միայն ավերում է։ Մեր երկրի անցած վաթսունամյա ուղին ապացուցյն է այն բանի, որ սոցիալիզմը ո՛չ միայն ողջ հնի, նախածի խորտակում է, այլև, գլխավորապես, նոր աշխարհի ստեղծում, համաժողովրդական արարում։

Ընդհանուր, մեծ նպատակով միավորված ավելի քան հարյուր ազգեր ու ժողովուրդներ, լենինյան կուսակցության ղեկավարությամբ ստեղծեցին նոր աշխարհը։

Մեր երկրի սոցիալիստական վերափոխումների ընթացքում վերածնվեցին տարացեղ ու բազմալեզու հանրությունները։ Ավելորդ չէ հիշեցնել հետադիմական ուժերի վաղուց ի վեր սահմանած վարկածը «պատմական» և «ոչ պատմական» ազգերի ու ժողովուրդների մասին, որոնցից առաջիններն, իբր, օժտված են տաղանդներով՝ իրավասու կառավարելու մյուսներին, որոնք «ձիրքազուրկ են», պարտավոր ենթարկվել «այս աշխարհի ուժեղներին»։

Մարքսիզմ-լենինիզմը վաղուց պսակազերծել ու մերկացրել է նման հակապատմական, հակագիտական տեսակետները՝ իրենց անսքող մարդատյացությամբ, ցույց տվել, որ ամեն մի ժողովուրդ գործունակ է պատմական ըստեղծագործության և առաջադիմության։ Սոցիալիստական հասարակարգը, բոլոր ազգերի համար մեր երկրում ստեղծելով անհրաժեշտ համահավասար պայմաններ, ապացուցեց իր իրավացիությունը, հետևապես և՝ լենինյան ազգային քաղաքականության ճշմարտացիությունն ու խորաթափանցությունը։

Սոցիալիստական համաժողովրդական արարումներում հատուկ տեղ է

տուրան, որը մեր կուսակցության լենինյան ազգային քաղաքականության օրգանական մասն է։

Երկրորդ փուլը՝ նոր կուլտուրայի զարգացման շրջանը, համընկավ Սովետական Միությունում սոցիալիզմի լրիվ և վերջնական հաղթանակը նշանավորող հնգամյակների հետ։ Ապահովված հարաճուն նյութական բազայով, սովետական մտավորականության՝ կուսակցության պատրաստած ու դաստիարակած բազմաթիվ կադրերով, ժողովրդական զանգվածների աճող կուլտուրականության պայմաններում, նոր մշակույթն ընդգրկում է հոգևոր կյանքի բոլոր ոլորտները։ Կարող ենք ասել, որ ինչպես սոցիալիստական կուլտուրայի կազմավորման, նույնպես և, մանավանդ, զարգացման տարիներին, մշակույթի ոլորտում կենսունակ հինը և ստեղծվող նորը փոխներգործում էին՝ նորի առաջատար դերի պայմաններում։

Իհարկե, սոցիալիստական կուլտուրայի ձևավորման ռեալ բազան և մակարդակները, ինչպես և օբյեկտիվ ու սուբյեկտիվ հնարավորությունները, տեմպերի ապահովումը բնավ էլ միատեսակ չէին։ Եթե, հատկապես, չնշենք Հոկտեմբերի նախօրյակին բարձր մակարդակի վրա գտնվող ռուսական հարուստ կուլտուրայի համաշխարհային նշանակությունը, ապա հարկ կլինի ասել, որ զարգացած մշակույթ ունեցող առանձին ժողովուրդների մոտ նոր հոգևոր կուլտուրայի ձևավորման մակարդակը համեմատաբար բարձր էր, իսկ մյուսների մոտ, հակառակը՝ շատ ցածր։

Այսպես, օրինակ, երկու եղբայրական ժողովուրդների՝ հայերի ու վրացիների կուլտուրան, Հայաստանում և Վրաստանում սովետական կարգերի հաստատման ժամանակ, տարբերվում էին իրենց ճյուղավորվածությամբ, բազմադարյան փորձով ու ավանդույթներով։ Հանրահայտ իրողություններ էին ժողովրդական գեղարվեստական հարուստ ստեղծագործությունը, պատմագրությունն ու փիլիսոփայությունը, քերականությունը՝ իր հին, լայն առումով, հռետորական արվեստը, դպրոցական կրթությունը, գրականությունը, թատրոնը, գեղանկարչությունը, երաժշտությունը, ճարտարապետությունն ու կիրառական արվեստը, ինչպես և միջնադարյան համալսարաններում սկզբնավորված մի քանի ճշգրիտ գիտությունների սաղմերը։ Այդ կուլտուրան, չնայած ժողովուրդների պատմության ընթացակցած ողբերգական աղետներին, զարգացավ տակավին հինգերորդ դարում հայկական և վրացական գրերի ստեղծման սեփական բազայի վրա։

Այդ կուլտուրաների մինչսովետական պսակը դարձավ հայ և վրաց լենինյանների ջանքերով ձևավորված գիտական-մատերիալիստական հայացքը՝ անկապտելի մասը համառուսական միասնական մարքսիստական մտքի, որն ամենուրեք, ինչպես և Անդրկովկասում, միահյուսվում էր բանվոր դասակարգի հեղափոխական շարժմանը։ Այլ խոսքով՝ այդ մշակույթի առկայությունն արդեն պարարտ հող էր նոր կուլտուրայի գոյավորման ու զարգացման համար։

Այդպիսի պայմաններում համեմատաբար դյուրին էին նոր կուլտուրայի ձևավորումն ու զարգացումը։ Սակայն երկու կուլտուրաների հարուստ պատմությունը զերծ չէր դասակարգային ներքին հակասությունից, ազգայնականության ու պահպանողականության տարրերից, հնացած ձևերի «հավերժացման» և «հնի» իդեալականացման միտումներից։

Մեր կուսակցության ղեկավարած գաղափարական սուր պայքարում հաղթահարվեցին այդ հակասությունները, և սոցիալիստական կուլտուրայի կերտման ընթացքում յուրաքանչյուր ազգային մշակույթում աստիճանաբար հաղթանակեց նորը, առաջավորը։

Այլ կերպ ընթացավ տասնյակ ուրիշ ազգությունների, հատկապես էթնիկական խմբավորումների նոր կուլտուրայի ձևավորումը։ Տարբեր էին նրանց դժվարությունները. նրանք չունեին այն ամենը, ինչ ամբարել էին ո՛չ միայն հայերն ու վրացիները, այլև, օրինակ, ադրբեջանցիները, ուզբեկներն ու տաջիկները, ուկրաինացիները, բելոռուսները, մոլդավացիները և մեր երկրի մյուս ժողովուրդները։ Իրենց կուլտուրական առաջընթացը նախնական



քայլերից էին սկսելու ո՛չ միայն Հյուսիսային Կովկասի, Դաղստանի գիր չունեցող ժողովուրդները, այլև, հատկապես, Հեռավոր Արևելքի ու ծայր Հյուսիսի էթնիկական փոքր հանրությունները, որոնք տակավին ապրում էին տոհմացեղային միություններով։ Ճիշտ է, նրանք զրոյից չէին սկսելու։ Օրինակ, այժմ Սովետական Միությունում իրենց հայտնի արձակագիրներն ու պոետներն ունեցող չուկչիներն ու նանայները հնուց ի վեր տիրապետում էին ոսկրահատման, կիրառական, գեղեցիկ արվեստներին, ներկայացնում էին թատերախաղեր, ունեին բովանդակալի ու հետաքրքրական ժողովրդական բանահյուսություն։ Այս իրողություններն, անշուշտ, հանդիսացան չուկչիների և նանայների կուլտուրայի ձևավորման աղբյուրը։ Այդ հանգամանքը, սակայն, չէր բացառում նոր մշակույթի ձևավորման այն շատ լուրջ դժվարությունները, որոնք հետևանք էին գրի, մայրենի լեզվով այբբենարանի, դպրոցների բացակայության։

Այսպիսով, ժառանգելով մեծ ու փոքր պատմական հանրությունների ստեղծած ողջ արժեքավորը, սոցիալ-դասակարգային բոլորովին նոր հիմքի վրա շարունակում է զարգանալ սովետական կուլտուրան՝ ծառայելով բոլոր աշխատավորների շահերին։

Հռչակելով ՍՍՀՄ ժողովուրդների իրավահավասարության սկզբունքը և ապահովելով դրա անշեղ իրականացումը, Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը գործում է մարքսիզմ-լենինիզմի ոգով, հաստատելով, որ առանց տարբեր ազգերի ու ժողովուրդների ազգային պատմության իմացության, սոցիալ-պատմական յուրահատկությունների, ավանդույթների ու փորձի հաշվառման, անհնար է նրանց ներգրավել սոցիալիստական շինարարության ոլորտը։ Ահա ինչու կոմունիստական կուսակցությունը Հոկտեմբերյան հեղափոխության սկզբից իսկ ո՛չ միայն հոգածությամբ վերաբերվեց ժողովուրդների անցյալի նկատմամբ, այլև ապահովեց նրանց կուլտուրական ժառանգության քննադատաբար, ստեղծագործական օգտագործումը։ Մեր կուսակցության համար չկա և չի կարող լինել «մեծ» ու «փոքր» ժառանգություն, որոնք տարբերակվեին ստեղծողների թվաքանակով կամ ամբարված փորձի հարստությամբ։ Կուսակցության համար, սակայն, սկզբունքային նշանակություն ունի ճիշտ վերաբերմունքը ամեն մի ժառանգության նկատմամբ և դրա փոքր ու մեծ արժույթների բանիմաց ներառումը նոր կուլտուրայի ստեղծման ոլորտը։

Բնականաբար, այդպիսի պայմաններում երևան եկան ինքնատիպ կուլտուրայի այնպիսի կողմեր, ինչպիսիք մինչ սոցիալիզմը, որոշ անբարենպաստ հանգամանքների բերումով, մոռացության էին մատնվել և ինչ-ինչ պատճառներով թերագնահատվելով որևէ դեր չէին կարող խաղալ հասարակական առաջընթացում։ Նոր կուլտուրայի ձևավորման ու հնի քննադատաբար օգտագործման դիալեկտիկական միասնությունն այն միակ ճիշտ ուղին է, որն ընտրեց կուսակցությունը՝ Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ և որով շարունակում է ընթանալ այժմ։ Դրա շնորհիվ վերածնվեցին ազգային մշակույթները, աստիճանաբար համահարթվեցին սոցիալիստական դարձած բազում ազգերի ու ժողովուրդների հոգևոր մշակույթի զարգացման տեմպերն ու մակարդակները, հարստացավ ու շարունակում է խորանալ կուլտուրայի սոցիալիստական բովանդակությունը, կատարելագործվեցին դրա, հատկապես գեղարվեստական ստեղծագործությունների ազգային ձևերը։ Ինտերնացիոնալիստականի և ազգայինի հարաճուն միասնությունը դարձավ սոցիալիստական կուլտուրայի զարգացման կարևորագույն օրինաչափությունը։

Այս պրոցեսում անգնահատելի է ռուսական կուլտուրայի դերը։ Օժտված վիթխարի ու բազմապիսի հոգևոր հարստությամբ, աչքի ընկնելով առաջավոր ավանդույթներով, իսկ գեղարվեստի ոլորտում՝ ռեալիստական գրականության ու արվեստի խոշորագույն նվաճումներով ու փորձով, այն օրինակ է ձևավորվող ու զարգացող ազգային կուլտուրաների համար։ Օբյեկտիվորեն ստեղծված իր այդ պատմական առաքելությամբ, սովետական բազմազգ կուլտուրայի զարգացման բարդ համակարգում այն մեծ դպրոց է և շաղկա-

պող օղակ։ Այս առումով վիթխարի է ռուսաց լեզվի դերը, որը միավորել է
մեր երկրի բոլոր ժողովուրդներին, միաժամանակ օգնելով նրանց՝ հաղոր-
դակցվելու համաշխարհային կուլտուրային։
Անշուշտ, դյուրին չէին սոցիալիստական մշակույթի ձևավորման ու զար-
գացման ուղիները։ Գաղափարաքաղաքական և դասակարգային սուր պայ-
քար սոցիալիզմի թշնամիների դեմ, հնի խորտակում, հին սովորույթների
հաղթահարում, մշակույթի հակագիտական ու խեղաթյուրված մեկնություն-
ների քննադատություն— այս և այլ դժվարություններ են ընթացակցել ձևով
ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի ձևավորմանը
և, հատկապես՝ զարգացմանը։
Սոցիալիստական հասարակարգի, ինչպես և կուլտուրայի համար ծանրա-
գույն փորձություն եղան մեծ Հայրենականը, ապա, թերևս անհամեմատ նը-
վազ չափով՝ հետպատերազմյան վերականգնման ժամանակաշրջանը։ Բայց
դրանք չընդհատեցին նոր կուլտուրայի առաջընթացը, այլ հանդիսացան դրա
կենսունակության և ամրության դաժան քննություն, ճշմարիտ ժողովրդայ-
նության, համախմբող, կազմակերպող, գաղափարադաստիարակչական դե-
րի քննություն։ Այդ տարիներին առավել ակտիվացավ սովետական կուլտու-
րան։ Ճիշտ է, նկատելիորեն նեղացավ մշակութային հաստատությունների ու
ձեռնարկությունների ցանցը, բայց փոխարենը բարձրացավ կուլտուրայի ներ-
գործունության ուժը, «ինքնահատույցը»։ Կուլտուրայի գործիչները պատվով
դիմագրավեցին այդ մեծ փորձությունը։ Առավել լայնորեն բացահայտվեց
սովետական հայրենասիրության ոգին, կուլտուրայի գաղափարայնությունն
ու վեհ հումանիզմը։ Այլ խոսքով՝ մշակույթը դարձավ առավել մարտունակ,
կարևոր դեր խաղաց ֆաշիզմի դեմ մղվող համաժողովրդական պայքարում,
ապա նաև՝ թշնամու ավերածը վերականգնելու գործում։
Սոցիալիստական կուլտուրայի երրորդ փուլը նրա ծաղկումն է, որը հա-
տուկ է զարգացած սոցիալիզմին։
Դեռևս Մարքսն ու Էնգելսը կանխատեսել էին կուլտուրայի ծաղկումը կո-
մունիստական հասարակարգի պայմաններում։ Բնորոշ է, որ ամենայն սրու-
թյամբ քննադատելով ապագայի կուլտուրան ժխտող հիպոթեզները, Մարքսն
ու Էնգելսը հիմնավորեցին դրա ծաղկման գաղափարը։ Եվ այն, ինչ իրակա-
նացվեց մեզ մոտ, գիտական կոմունիզմի հիմնադիրների լավատեսական
կանխատեսումների ճշմարտացիության վկայությունն է։
Առավել քան ակնհայտ է, որ եթե սովետական բազմազգ կուլտուրան
չձևավորվեր նոր, սոցիալ-դասակարգային հիմքի և կոմունիստական կուսակ-
ցության հստակ դրույթների վրա և ապա չզարգանար ժամանակակից բոլոր
ձևերով ու ժանրերով, այն չէր կարող հասնել արդի մակարդակին— ծաղկել
ու շարունակել իր առաջընթացը։ Կուլտուրայի ծաղկումը, որքան էլ բարձր
լինի դրա մակարդակը, վերջնական չէ. այսպիսին է դիալեկտիկական օրինա-
չափությունը։ Այս առումով ուշագրավ է ՍՄԿԿ Կենտկոմի՝ կուսակցության
XXV համագումարին ներկայացված հաշվետու զեկուցումը։ Համագումարում
մասնավորապես շեշտվեց, որ «Տեղի է ունենում արվեստը կյանքի իմացու-
թյամբ հարստացնելու և, մյուս կողմից, մշակույթի արժեքներին բազմամի-
լիոն աշխատավորական զանգվածների հետագա հաղորդակցման կենարար
պրոցես» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, «Հայաստան» հրատ., 1976 թ.
էջ 120)։
Այդ դրույթին լիովին համապատասխան, կուսակցության XXV համա-
գումարում որոշվեց «Ապահովել սոցիալիստական կուլտուրայի և արվեստի
դերի հետագա բարձրացումը սովետական մարդկանց գաղափարաքաղաքա-
կան, բարոյական ու գեղագիտական դաստիարակության, նրանց հոգևոր
պահանջմունքների ձևավորման գործում» (Նույն տեղը, էջ 327)։
Համագումարյան դրույթներում շեշտվում է հոգևոր կուլտուրայի բազ-
մաֆունկցիոնալությունը. ինչպես սոցիալիստական շինարարության բոլոր
տարիներին, մեր օրերում ևս առաջին պլան է մղվում սովետական մարդ-
կանց գաղափարաքաղաքական դաստիարակությունը։



Մարքսիզմ-լենինիզմը ժխտում է հոգևոր կուլտուրայի ապաքաղաքակա-
նությունը, աբստրակտ կուլտուրան և հաստատում, որ մարդկության ամբա-
րած, «նորի կառուցման» ընթացքում հար ստեղծվող հոգևոր արժույթները
պետք է ծառայեն աշխատավորության շահերին ու նրա հարաճուն պահանջ-
մունքներին, իդեալներին։ Նման ըմբռնումը հավաստվում է համագումարի՝
կուլտուրային վերաբերող դիրեկտիվներում, որոնք հաջողությամբ կենսա-
գործվում են։
Արդ, որո՞նք են սոցիալիստական կուլտուրայի ծաղկման հիմնական
հատկանիշներն ու ցուցանիշները։ Նոր կուլտուրայի ձևավորման նախնական
փուլերում առաջնայինն ու անհետաձգելին մասսայական անգրագիտության
վերացումն էր, իսկ այժմ, մշակույթի, ծաղկման պայմաններում, իրակա-
նացվում է համընդհանուր, պարտադիր միջնակարգ կրթությունը։ Սովետա-
կան Միությունում 1975—76 ուսումնական տարում, կրթության տարբեր
համակարգերում ընդգրկված էր 90 մլն մարդ. ժողտնտեսությունում զբաղ-
ված աշխատավորության մոտ երեք քառորդն ուներ բարձրագույն և միջնա-
կարգ (լրիվ և թերի) կրթություն։ Միութենական և ինքնավար հանրապետու-
թյուններում տեղական մտավորականությունն է ստանձնել կուլտուրայի զար-
գացման գործը։
Սովետական Միությունն աշխարհի ամենաընթերցասեր երկիրն է։ 1976
թվականին մեր երկրում գործում էին 131.3 հազար պետական և հանրային
գրադարաններ՝ 540.5 մլն գիրք ու ժուռնալով (բացառյալ միլիոնավոր անձ-
նական գրադարանները)։ Սոցիալիստական մշակույթի ձևավորման փուլում
դիր ստեղծվեց մոտ 40 ազգությունների համար. նոր էր ծնվում նրանցից շա-
տերի գրականությունը՝ իր վրա կրելով բանահյուսության կնիքը։ Տակավին
30-ական թվականներին զարգանում էր ՍՍՀՄ ժողովուրդների գրականու-
թյունը՝ մոտ 20 ազգային լեզուներով։ Այժմ. մշտապես կատարելագործվող
ու մասնագիտացվող այդ գրականությունը զարգանում է ավելի քան յոթա-
նասուն լեզուներով։
Կուլտուրայի կարևորագույն բնագավառ՝ հրատարակչական գործը, սո-
վետական կարգերի սկզբնական շրջանում զարգանում էր Մոսկվայում, Լե-
նինգրադում, միութենական հանրապետությունների մայրաքաղաքներում և
մի քանի այլ խոշոր քաղաքներում, մեծ մասամբ՝ ոչ ժամանակակից պոլիգրա-
ֆիայի հիման վրա։ Իսկ այժմ մեր երկրում գործում են 195 հրատարակչու-
թյուններ, որոնց մեծ մասն ապահովված է ժամանակակից տեխնիկայով։
Միայն 1975 թվականին հրատարակվել է 83.439 գիրք ու գրքույկ՝ ՍՍՀՄ ժո-
ղովուրդների 58 և արտասահմանյան ժողովուրդների 50 լեզուներով, 1.671.782
հազար տպաքանակով։ Այսինքն՝ սովետական յուրաքանչյուր մարդու ընկ-
նում է ավելի քան 7 նոր գիրք, բացառյալ ամսագրերը, պարբերականները և
այլն։
Սոցիալիստական մշակույթի ձևավորման տարիներին գյուղական վայ-
րերում խրճիթ-ընթերցարանի կամ գործարանային «Կարմիր անկյան» բա-
ցումը նշանակալից երևույթ էր։ Այժմ մեզ մոտ գործում են 1.352 հազար ա-
կումբ, այդ թվում և մշակույթի պալատներ, 1.295 բազմաբնույթ և տարբեր
նշանակության թանգարաններ, ուր տարեկան այցելում է 135 մլն մարդ։ Սո-
վետականացման առաջին տարիներին երկրում գործում էր միայն մեկ ազգա-
յին կինեմատոգրաֆիա— ռուսականը։ Ներկայումս կինոարվեստը զարգա-
նում է միութենական և մի քանի ինքնավար հանրապետություններում։ Հատ-
կանշական է, որ երիտասարդ կինոարվեստի շատ ժապավեններ միջազգային
փառատոներում արժանացել են մրցանակների ու խրախուսանքի։
Կուլտուրայի ծաղկման արտահայտություններից է սովետական արվես-
տի բազմատեսակությունը։ Եթե անցյալում զապախներն ու կիրգիզները,
թուրքմեններն ու թաթարները, օսեթինները և ուրիշներ նախասովետական
ժամանակներում ծանոթ էին միայն յարային միաձայն երաժշտությանը, և
այն էլ մենակատարմամբ, իրազեկ չէին ձայնի մշակման արվեստին, այժմ

հաջողությամբ ստեղծում են երաժշտության այնպիսի բարդ ու սինթետիկ ձևեր, ինչպիսիք են օպերայինն ու սիմֆոնիկը։

Չանդրադառնալով շատ այլ փաստերի, նշենք կարևոր մի հանգամանք։ Սոցիալիստական կուլտուրայի ձևավորում-զարգացում-ծաղկումը միայն քանակական աճի ուղենիշներ չեն, որն, անշուշտ, նույնպես կարևոր է։ Մեր երկրում կուլտուրայի տարեցտարի արագացող առաջընթացը, որ սկզբնական շրջանում ոչ բոլորն էին նշմարում, նաև որակական պրոցես է։ Նույնիսկ հեղափոխության սկզբնական շրջանում մարդկանց զանգվածային ընդգրկումը կուլտուրայի սպասարկման ոլորտն արդեն որակ էր. կուլտուրան դառնում էր առավել դեմոկրատական ու ակտիվ, փոխվում էր պատմական իրադարձություններին մասնակցող մարդկանց հոգեկան կերպարը։ Ծաղկման շրջանում սոցիալիստական կուլտուրային բնորոշ են՝ ժամանակակից սոցիալական առաջընթացի բոլոր կողմերն արտացոլող սոցիալիստական բովանդակությունը, կատարյալ ժողովրդայնությունը, հումանիզմը, աշխատավորության շահերին ծառայող կենսահաստատ ուժը։

«Զարգացած սոցիալիզմը,— կարդում ենք ՍՄԿԿ Կենտկոմի Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի մասին որոշման մեջ,— նշանավորում է աստիճանաբար կոմունիստականի վերաճող հասարակական հարաբերությունների ողջ սիստեմի հասունության բարձր աստիճանը։ Դրան հատուկ են աշխատավորների գաղափարաքաղաքական ու սոցիալական անխախտ համախմբվածությունը, նրանց անսահման նվիրվածությունը կոմունիստական կուսակցության վեհ իդեալներին, հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին։ Զարգացած սոցիալիզմն այսօր սոցիալական առաջընթացի բարձրագույն նվաճումն է»։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում հնարավոր դարձավ սովետական կուլտուրայի ծաղկումը, որն այժմ աչքի է ընկնում «հասունության բարձր աստիճանով» և այն արտահայտող բարդ սիստեմով։ Սովետական կուլտուրան, լինելով զարգացած սոցիալիզմի բնորոշ գծերի ու հատկանիշների արտահայտությունը, միաժամանակ սոցիալիզմի հետագա առաջընթացի օրգանական մասն է, կարևորագույն գործոնը։

Մեր երկրի քաղաքացիներն ունեն կուլտուրայի բոլոր ձևերից ու նվաճումներից օգտվելու իրավունք, այդ իրավունքը հաստատված է պետականորեն։ Սոցիալիստական հասարակության կուլտուրական վերելքի նկատմամբ մեր կուսակցության ու կառավարության հոգածության ևս մի դրսևորում է ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագիծը, որը ներկայացված է համաժողովրդական քննարկման։

Կուլտուրայի նվաճումներից օգտվելու «...իրավունքը,— կարդում ենք Սահմանադրության նախագծի 46-րդ հոդվածում,— ապահովվում է պետական և հասարակական ֆոնդերում գտնվող հայրենական և համաշխարհային մշակույթի արժեքների հանրամատչելիությամբ, երկրի տերիտորիայում կուլտուր-լուսավորական հիմնարկների զարգացմամբ ու հավասարաչափ տեղաբաշխմամբ, արտասահմանյան պետությունների հետ կուլտուրական փոխանակման ընդլայնմամբ»։

Սոցիալիստական կուլտուրայի ծաղկում. այդ նշանակում է, որ սոցիալիզմը բացահայտեց և հետևողականորեն օգտագործում է դրանում առկա բոլոր հնարավորությունները, որ դրա անընդմեջ առաջընթացում դիալեկտիկորեն դրսևորվում են թե՛ միավորման և թե՛ տարբերակման պրոցեսները. այդ նշանակում է, որ այն համակողմանի և լիովին է բավարարում պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի, ինչպես և սոցիալիստական ամեն մի ազգի ու ժողովրդի հարաճուն հոգևոր պահանջմունքները։

ՍՍՀՄ բոլոր ազգերի ու ազգությունների իրական հավասարությունն ապահովող գրանիտյա հիմքի վրա խարսխված ծաղկուն կուլտուրան այդ հավասարության, սոցիալիստական կարգի մեծագույն նվաճման՝ «արմատական շահերի, նպատակների և մարքս-լենինյան գաղափարախոսության ընդհանրությամբ զոդված» սովետական ժողովուրդների հավասարության ակտիվ գործոնն է։

# ԸՆԴԱՐՁԱԿՎՈՒՄ Է ՄԱՅՐՈՒՂԻՆԵՐԻ ՑԱՆՑԸ

Ա. Դ. ՄԱՐՏԻՐՈՍՈՎ
ՀՍՍՀ Մինիստրների սովետի տրանսպորտի
և կապի բաժնի վարիչ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ, ինչպես և մեր հանրապետության աշխատավորները պատրաստվում են հանդիսավորությամբ նշելու Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության վաթսունամյակը։ Սովետական ժողովուրդը Հոկտեմբերի հոբելյանական տարելիցը դիմավորում է հայրենասիրական նոր գործերով, հարազատ կոմունիստական կուսակցության XXV համագումարի որոշումները կենսագործելու ասպարեզում ձեռք բերած ակնբախ հաջողություններով։ Մեր ժողովրդի հասույթները համոզիչ կերպով վկայում են, որ սոցիալիզմն ապահովել է հասարակական կյանքի համակողմանի առաջընթացի աննախադեպ տեմպեր։

Սովետական իշխանության տարիներին անճանաչելիորեն փոխվել է նաև մեր հանրապետության քաղաքական, տնտեսական, կուլտուրական կյանքը, հանրապետություն, որը հզոր Սովետական Միության անբաժանելի մասն է։

Ժողովրդական տնտեսության կարևոր ճյուղերից է տրանսպորտը, որի զարգացմանը մեծ ուշադրություն էր նվիրում Վ. Ի. Լենինը սովետական իշխանության առաջին իսկ օրերից. «...մենք պետք է ավելի ուժեղանանք, իսկ դրա համար պետք է զարգացնել խոշոր արդյունաբերությունը, հարկավոր է բարձրացնել տրանսպորտը» (Երկեր, հ. 31, էջ 610)։ Ուղեցույց ունենալով Լենինի ցուցումները, կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը հսկայական միջոցներ են հատկացնում տրանսպորտի զարգացմանը։

Ժամանակակից տեխնիկական բազայի վրա մեր երկրում ստեղծվել է ժողովրդական տնտեսության հարաճուն պահանջմունքները բավարարող հզոր տրանսպորտ, որի դեմքն այսօր որոշվում է ո՛չ միայն երկաթուղով, այլև տրանսպորտի նորագույն տեսակներով՝ օդային, ավտոմոբիլային և խողովակաշարային։ Որակական փոփոխություններ է կրել նաև երկաթուղին. ավանդական շոգեքարշին այժմ ամենուրեք փոխարինում են ջերմաքարշն ու էլեկտրաքարշը։

Նախահեղափոխական Հայաստանը, բացի Թբիլիսի—Երևան երկաթուղուց, ուրիշ երկաթուղային ճանապարհ չուներ։ Սովետական իշխանության տարիներին կառուցվեց Ջուլֆա—Մինջևան երկաթուղին, որը Երևանը կապեց եղբայրական Ադրբեջանի մայրաքաղաք Բաքվի հետ։ Դրանով էլ Սովետական Հայաստանն ուղիղ և կարճ ճանապարհով ելք ունեցավ դեպի Կասպից ծովը, իսկ Մինջևան—Ղափան երկաթուղային ճյուղի գործարկումը հնարավորություն ընձեռեց հարավի լեռնային հանքերը կապելու հանրապետության կենտրոնի և հյուսիսի հետ։ Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատն ստացավ Ղափանի հանքերի պղնձի կոնցենտրատը։

Նոր գծերի անցկացումը փոխեց երկաթուղային ցանցի աշխարհագրությունը։ Լենինական—Արթիկ—Պեմզաշեն և Անի—Անիպեմզա երկաթուղային ճյուղերի շնորհիվ հնարավոր դարձավ տուֆն ու պեմզայի հազվադեպ արտադրատեսակները փոխադրել նաև հանրապետությունից դուրս։

Ժողովրդատնտեսական մեծ նշանակություն ունեցավ Երևան—Հրազ-

կության անվտանգությունը: Սկսված են Սևանի լեռնանցքի ստորգետնյա թունելի կառուցման աշխատանքները: Նոր կառուցվող և վերակառուցվող բոլոր ճանապարհների վրա ուղևորների համար ստեղծված են հարմարավետ կանգառներ և այլ հարմարություններ:

Նախահեղափոխական Հայաստանում առհասարակ ավտոմեքենա չկար: Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո, 1928 թվականին, Երևանում կազմակերպվեց Անդրավտոարդարի գարաժ՝ ՍՍՀՄ ժողովրդական կոմիսարների սովետին առընթեր «Ցենտրոտրանս» տրեստի Անդրկովկասյան ավտոմոբիլային ոչ մեծ բազա, որն ուներ հիմնականում օտարերկրյա մակնիշների 30 մեքենա:

Հանրապետությունում ավտոտրանսպորտն սկսեց զարգանալ հայրենական ավտոարդյունաբերության ստեղծումից հետո: Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության 1939 թ. հուլիսի 25-ի հրամանագրով Հայաստանում կազմակերպվեց ավտոմոբիլային տրանսպորտի ժողովրդական կոմիսարիատ, որի տնօրինությանը հանձնվեցին ընդհանուր օգտագործման ավտոտրանսպորտային կազմակերպությունները, ավտովերանորոգման ու ավտոդողերի վերանորոգման ձեռնարկությունները և ուսումնական համապատասխան հաստատությունները:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին ավտոտրանսպորտն ի սպաս դրվեց ռազմաճակատի կարիքներին: Այդ պայմաններում, բնականաբար, խիստ կրճատվեցին ավտոմեքենաների պարկերը: 1946 թ. մեր հանրապետությունում հաշվվում էր ընդամենը մի քանի հարյուր ավտոմեքենա, այդ թվում՝ ավտոմոբիլային տրանսպորտի ժողովրդական կոմիսարիատի սիստեմում՝ 104 բեռնատար մեքենա և 36 ավտոբուս:

1950 թ. հետո ընկած ժամանակաշրջանը բնորոշվում է ավտոմոբիլային, այդ թվում՝ ընդհանուր օգտագործման տրանսպորտի բուռն զարգացմամբ: Ավտոմեքենաների թվական աճին զուգընթաց էապես բարելավվեց դրանց որակական կազմը: Կուսակցությունն ու կառավարությունը վիթխարի միջոցներ հատկացրին ճանապարհաշինարարությանը:

Այժմ ավտոտրանսպորտը հանրապետության ժողովրդական տնտեսության կարևոր ճյուղերից մեկն է. այն անմիջապես մտնում է արտադրության կազմակերպման համակարգի մեջ, ներգրավվում է արդյունաբերության, տրանսպորտի, գյուղատնտեսության տեխնիկական պրոցեսներում:

Հանրապետության ներտերիտորիալ տնտեսական յուրացման ժամանակ երբեմն հարց է ծագում. տրանսպորտի ո՞ր տեսակին առավելություն տալ՝ երկաթուղայի՞ն, թե՞ ավտոմոբիլային: Ելնելով աշխարհագրական, բնակլիմայական պայմաններից, նշված հարցին տարբեր պատասխան կարելի է տալ՝ նկատի ունենալով նաև դրանց զարգացման հեռանկարները: Սակայն առայժմ երկաթուղու ցանցի խտությունը պակաս է և հենց այդ պատճառով էլ հանրապետության մեծ մասում ավտոմոբիլային տրանսպորտը գլխավոր, իսկ շատ շրջաններում նույնիսկ տրանսպորտի միակ տեսակն է: Զարմանալի չէ, որ ժողովրդատնտեսական բեռների փոխադրման ընդհանուր ծավալում ավտոտրանսպորտի բաժինը 6 անգամ ավելի է, քան երկաթուղային տրանսպորտինը:

Ավտոտրանսպորտը արտադրաուժերի օրգանական մասն է և նկատելի դեր է խաղում երկրի տնտեսական զարգացման գործում: Այն միաժամանակ հանրապետությունը կապում է միութենական մյուս հանրապետությունների և երկրի տնտեսական շրջանների հետ, ապահովում բնական ռեսուրսների բազմակողմանի օգտագործումը, նպաստում հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի միավորմանը՝ միասնական արտադրատնտեսական համալիրում:

Հայաստանի ավտոմոբիլային տրանսպորտը հանրապետության ժողովրդական տնտեսության բաղադրամասն է: Այն զարգացել է հանրապետության արդյունաբերության և գյուղատնտեսության բոլոր ճյուղերին համընթաց: Ժողովրդական տնտեսության նոր՝ քիմիական, էլեկտրատեխնիկական, սարքա-



շինական, հաստոցաշինական, շինանյութերի արդյունաբերության և այլ ճյուղերի ստեղծումը, ինչպես նաև գոյություն ունեցող ճյուղերի հետագա զարգացումը, բնակարանային, արդյունաբերական և հիդրոտեխնիկական բուռն շինարարությունը կանխորոշում և պահանջում էին այդ ամենին զուգահեռ հիմնել հանրապետության միասնական ավտոտրանսպորտային սխեմ:

Այսպիսով, Հայկական ՍՍՀ-ում ավտոտրանսպորտը դարձավ փոխադրամիջոցների գլխավոր տեսակ: ՀՍՍՀ ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրության ապրանքատար ավտոմեքենաների պարկն այժմ շատ ավելի հզոր է, քան 1950 թվականին: Ընդ որում, եթե նկատի ունենանք, որ 1950 թ. մեքենաները փոքրատոննաժ էին, իսկ մեքենայական կազմի հետագա աճը տեղի էր ունենում մեծատոննաժ ավտոմեքենաների հաշվին, ապա բեռնունակությունը շատ անգամ ավելի կստացվի:

Տարեցտարի ավելանում են բեռնափոխադրումները ընդհանուր օգտագործման տրանսպորտով: Եթե 1971 թ. փոխադրումների ծավալը կազմել է 27,8 մլն տոննա, ապա 1976 թ. այն հասավ մինչև 55,4 մլն տոննայի, իսկ 519 մլն տոննա-կիլոմետրի բեռնաշրջանառությունը 1976 թ. հասավ 1.010 մլն տոննա-կիլոմետրի: Տարեցտարի ավելանում են բեռների կենտրոնացված փոխադրումները. 1976 թ. ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրության բեռնաշրջանառության ծավալում դրանց տեսակարար կշիռը կազմել է 30,3 տոկոս:

Ընդհանուր օգտագործման տրանսպորտի հետ մեկտեղ, հանրապետությունն ունի մի քանի տասնյակ հազար՝ հիմնականում մեծատոննաժ ապրանքատար մեքենաներ, որոնք սպասարկում են շինարարական խոշոր կազմակերպությունների, լեռնահանքային արդյունաբերության ու ժողովրդատնտեսական բազմաթիվ օբյեկտների:

Մեծ և կարևոր տեղ են գրավում մարդատար ավտոտրանսպորտը, բնակչությանը սպասարկող ավտոբուսային փոխադրումները, որոնք անմիջական կապ ունեն հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման հետ:

Այժմ ավտոմեքենան բառացիորեն նվաճել է Սովետական Հայաստանի ճանապարհները: Հանրապետության ավտոտրանսպորտը ամեն օր շուրջ մեկ միլիոն ուղևոր է փոխադրում: Հայաստանի գրեթե յուրաքանչյուր բնակավայր կարելի է անցնել ավտոբուսով: Ավտոբուսային ճանապարհների երկարությունն ավելի քան 15 հազար կիլոմետր է: Հանրապետության բոլոր քաղաքներում կազմակերպված է ներքաղաքային և մերձքաղաքային ավտոբուսային հաղորդակցություն:

Երևանը միջքաղաքային ավտոբուսային երթուղիներով կապված է ոչ միայն հանրապետության գրեթե բոլոր քաղաքների ու շրջանային կենտրոնների, այլև Թբիլիսիի և Բաքվի, Կիրովաբադի, Ստեփանակերտի, Նախիջևանի, կուրորտային սեզոնում՝ հանքաջրային խմբի առողջարանների, Օրջոնիկիձե, Գրոզնի, Նախիչևան և շատ այլ քաղաքների հետ:

Ուղևորների փոխադրման գործում բնակչության հարաճուն պահանջմունքները լիովին բավարարելու նպատակով մեծ ուշադրություն է նվիրվում ավտոտնտեսությունների տեխնիկական ծառայությանը: Գործարկվել են ավտոբուսային և տաքսամոտորային խոշոր ձեռնարկություններ, որոնք սարքավորված են ժամանակակից գարաժներով և տեխնիկայով, զգալիորեն բարձրացել է բնակչության սպասարկման կուլտուրան:

Ներքաղաքային փոխադրումների ոլորտում նշանակալի է էլեկտրական տրանսպորտի դերը: Երևան և Լենինական քաղաքներում երթևեկում են հարմարավետ տրոլեյբուսներ: Մայրաքաղաքում տրոլեյբուսային գծերի երկարությունը 145 կմ է՝ 15 ուղերթով, տրամվայի գծերինը՝ 100 կմ՝ 12 ուղերթով:

Տասներորդ հնգամյակում մեծ ներդրումներ են կատարվելու նոր ճանապարհների կառուցման և եղածները լայնացնելու նպատակով: Կառուցվելու է Երևան—Արտաշատ մայրուղին, շարունակվելու է Երևան—Լենինական (Ապարանի վրայով), Երևան—Աշտարակ—Թալին—Լենինական և այլ ճանապարհների շինարարությունը:



# ԲՆՆԱՐԿՈՒՄ ԵՆՔ ՍՍՀՄ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԻԾԸ

## ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՊԱՅՄԱՆԸ

**ՍՍՀՄ** ՆՈՐ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԻԾԸ համաժողովրդական սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման ու խորացման նոր փուլի արտահայտությունն է։ Այն արտացոլում է 60 տարիների ընթացքում սոցիալիստական հասարակության ձեռք բերած վիթխարի նվաճումները, հասարակական-տնտեսական ու սոցիալական կյանքի բոլոր ասպարեզներում կատարված ակնառու փոփոխությունները։ Այդ տարիներին սովետների երկիրն ապահովեց արտադրամիջոցների զարգացման և դրանց հանրայնացման բավականին բարձր մակարդակ, գիտության ու կուլտուրայի աննախընթաց վերելք, բնակչության աճող բարեկեցություն, անհատի բազմակողմանի զարգացման համար առավել բարենպաստ պայմաններ։ Սովետական Միությունն այսօր բնութագրվում է արտադրաուժերի մեծ վերելքով, հասուն սոցիալիզմին բնորոշ արտադրահարաբերություններով, սոցիալ-տնտեսական վիթխարի առաջընթացով։

Ներկայումս գործող Հիմնական օրենքն ընդունվելուց ի վեր, անցած չորս տասնամյակներում էապես փոխվել է մեր երկրի միջազգային դրությունը, այն մեկընդմիշտ դուրս է եկել կապիտալիստական շրջափակումից, ստեղծվել է սոցիալիստական պետությունների հզոր համագործակցություն, սոցիալիզմը վերածվել է համաշխարհային սիստեմի։

Սոցիալիզմը մեր երկրում թևակոխել է իր հասունության շրջանը՝ զարգացած սոցիալիզմի փուլը, երբ մարդու նկատմամբ հոգատարությունը մղվում է առաջին պլան և հասարակության բոլոր արտադրաուժերը, գիտության ու տեխնիկայի նվաճումներն օգտագործվում են հանուն մարդու բարօրության, նրա հոգևոր ծաղկման։ Նոր Սահմանադրության նախագծի էությունը հենց հասարակական կյանքի բոլոր ասպարեզներում ձեռք բերած նվաճումների օրենսդրական ամրապնդումն է։ Նախագիծը, ինչպես նշում է Լ. Ի. Բրեժնևը, հռչակում է համաժողովրդական սոցիալիստական պետության նպատակներն ու սկզբունքները, սահմանում ու վավերագրում դրա կազմակերպման հիմունքները։

Հասուն սոցիալիստական հասարակարգի արդի փուլում բնակչության բարեկեցության աճի և անհատի համակողմանի զարգացման գործում առանձնապես կարևորվում են այդ սիստեմի տնտեսական հիմքը կազմող արտադրության միջոցների դինամիկ ու համամասնական զարգացման, դրանց հետագա բազմապատկման, օգտագործման բարելավման, ինչպես նաև հանրայնացման մակարդակի բարձրացման ու հանրային սեփականության պահպանման խնդիրները։

Ինչպես գործող Սահմանադրության մեջ, այնպես էլ նոր Սահմանադրու-



թյան նախագծում արտադրության միջոցների սոցիալիստական սեփականու-
թյունը դիտվում է որպես ՍՍՀՄ տնտեսական սիստեմի հիմք։ Նախագծում
նշվում է, որ արտադրության միջոցների սոցիալիստական սեփականությունն
ընդգրկում է պետական (համաժողովրդական) սեփականությունը, կոլտնտե-
սությունների և մյուս կոոպերատիվ կազմակերպությունների (կոլտնտեսա-
յին-կոոպերատիվ) սեփականությունը, արհմիությունների և այլ հասարա-
կական կազմակերպությունների սեփականությունը։

Ի տարբերություն ամբողջ սովետական ժողովրդի ընդհանուր ունեցված-
քը կազմող պետական սեփականության, կոլտնտեսությունների, նրանց միա-
վորումների սեփականությունը հանդիսացող արտադրության միջոցները և
մյուս այն ունեցվածքը, որը ծառայում է նրանց կանոնադրական խնդիրների
իրականացմանը, միայն այդ կազմակերպությունների սեփականությունն են։
Դա նշանակում է, որ պետական սեփականությունը բնութագրվում է հան-
րայնացման ավելի բարձր մակարդակով։ Ուստի, նախագծի կարևորագույն
սկզբունքներից մեկը պետական սեփականության հետ կոլտնտեսային-կոո-
պերատիվ սեփականության մերձեցումն է՝ կոլտնտեսայինը համաժողովրդա-
կան սեփականության մակարդակին բարձրացնելու ճանապարհով։

Երկրի հասարակական և սոցիալ-տնտեսական առաջընթացն անհրա-
ժեշտ է դարձրել Սահմանադրության մեջ կատարել մի շարք ճշտումներ։ Դա
վերաբերում է նաև սեփականության ձևերին։ Բանն այն է, որ ներկայումս
բավականին մեծ ուժ են ներկայացնում արհ-
հասարակական-քաղաքական կազմակերպությունները, որոնք մեծ
միութենական և մյուս հասարակական սպառման ֆոնդերի բաշխման գործում։ Իսկ այդ
դեր ունեն հասարակական սպառման ֆոնդերի բնակչության սոցիալ-տնտեսական զարգացման և
ֆոնդերի նշանակությունը բնակչության սոցիալ-տնտեսական զարգացման և
բարեկեցության բարձրացման գործում անընդհատ մեծանում է։ Աստիճա-
նաբար կավելանա նաև արհմիութենական և մյուս կազմակերպությունների
տնօրինած ունեցվածքը, որ նախատեսված է իրենց անհրաժեշտ կանոնադրա-
կան խնդիրներն իրականացնելու համար։ Ահա թե ինչու սեփականության
պետական և կոլտնտեսային ձևերի հետ մեկտեղ նոր Սահմանադրության նա-
խագծում առաջին անգամ հիշատակվում է արհմիությունների և այլ կազմա-
կերպությունների սեփականության մասին։

Սահմանադրության նախագծի կարևորագույն հոդվածներից մեկը վե-
րաբերում է սոցիալիստական էկոնոմիկայի ղեկավարման սկզբունքներին։
Այս ասպարեզում նախագծի մեջ կատարված լրացումներն ու ճշտումները
պայմանավորված են ո՛չ միայն արտադրության միջոցների հանրայնացման
մակարդակի հետագա բարձրացմամբ և հասարակական աշխատանքի ավե-
լի կատարելագործմամբ, այլև թելադրվում են երկրի տնտեսական կապերի
զարգացմամբ, նրա առանձին տնտեսական շրջանների մասնագիտացմամբ
և, հետևաբար, ինտեգրացման պրոցեսների ուժեղացմամբ։ Ազգային ամեն
մի հանրապետության էկոնոմիկան երկրի ընդհանուր էկոնոմիկայի մի ա-
ռանձին մասն է։ Ոչ միայն առանձին ձեռնարկությունների, այլև տնտեսական
առանձին ճյուղերի առաջընթացը, ստեղծված ճյուղային համակարգում նյու-
թական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների օգտագործման ար-
դյունավետությունը կանխորոշվում են յուրաքանչյուր հանրապետության
արտաքին տնտեսական փոխադարձ կապերի ստիճանով, ամբողջ երկրի,
ինչպես նաև միջազգային մասշտաբով աշխատանքի կազմակերպմանն ունե-
ցած նրանց մասնակցությամբ։ Իսկ այն, թե յուրաքանչյուր հանրապետու-
թյուն ինչպես է մասնակցում ՍՍՀՄ և միջազգային մասշտաբով աշխատանքի
բաժանմանը, պայմանավորված է նրանց էկոնոմիկայի զարգացման մակար-
դակով ու կառուցվածքով։ Եվ իրոք, Սահմանադրության նախագծում շեշտ-
վում է, որ Սովետական Միության էկոնոմիկան միասնական ժողովրդատըն-
տեսական կոմպլեքս է, որն ընդգրկում է հանրային արտադրության, բաշխ-
ման ու փոխանակման բոլոր օղակները երկրի տերիտորիայում։ Հետևապես,
ժամանակակից արտադրական ինտեգրացիայի պայմաններում սովետական
հանրապետություններում հասարակական արտադրության արդյունավետության

բարձրացման կարևորագույն ելակետը աշխատանքի բաժանման և կոոպերացման հիման վրա էկոնոմիկայի խոր մասնագիտացումն է: Հասկանալի է, որ նման պայմաններում չափազանց կարևոր նշանակություն են ստանում հասարակական արտադրության առանձին օղակների միջև գիտականորեն հիմնավորված ճիշտ համամասնությունների սահմանումը, նրանց կառավարումը: Արտադրության միջոցների հանրային սեփականությունն ստեղծում է լիակատար պայմաններ, որպեսզի էկոնոմիկայի պետական ղեկավարումն իրականացվի պետական պլանների միջոցով՝ կենտրոնացված ղեկավարումը զուգակցելով ձեռնարկությունների, միավորումների և այլ կազմակերպությունների տնտեսական ինքնուրույնության և նախաձեռնության հետ: Հենվելով աշխատավորների ստեղծագործական ակտիվության, գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների վրա, սոցիալիստական պետությունն ապահովում է աշխատանքի արտադրողականության աճը, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացումը, ժողովրդական տնտեսության դինամիկ ու համամասնական զարգացումը:

Սահմանադրության նախագծում առանձնահատուկ դեր է հատկացվում արտադրության զարգացման, աշխատանքային պայմանների բարելավման, սոցիալ-կուլտուրական կարիքների և նյութական խրախուսման համար նախատեսված միջոցների օգտագործման ասպարեզում աշխատավորական կոլեկտիվների ու հասարակական կազմակերպությունների ակտիվ մասնակցությանը: Այս և արտադրության կառավարման գործում աշխատավորական կոլեկտիվների դերի բարձրացումը արտադրության կառավարման դեմոկրատական սկզբունքների զարգացման մի նոր քայլ է:

Սահմանադրության նախագծում վավերագրված է այն դրույթը, որ «սոցիալիզմի օրոք հանրային արտադրության գերագույն նպատակը մարդկանց նյութական ու հոգևոր հարաճուն պահանջմունքների առավել լրիվ բավարարումն է»: Այս տեսակետից հատկանշական է նախագծի 13-րդ հոդվածը, ուր խոսվում է հասուն սոցիալիզմի դարաշրջան թևակոխած մարդկանց ազատ աշխատանքի մասին. այն դիտվում է որպես հանրային հարստության, ժողովրդի, մարդու բարեկեցության աճի աղբյուր: Ներկայումս ստեղծված են բոլոր պայմանները «յուրաքանչյուրից ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սկզբունքի կիրառման համար: Դրանով իսկ սոցիալիստական պետությունը վերահսկողություն է իրականացնում աշխատանքի և սպառման չափի նկատմամբ: Պետությունը, նշված է նախագծում, զուգակցելով նյութական ու բարոյական խթանները, նպաստում է, որ աշխատանքը դառնա սովետական յուրաքանչյուր մարդու առաջին կենսական պահանջմունքը:

Արտադրության միջոցների հանրային սեփականության զարգացումը, արտադրահարաբերությունների կատարելագործումը հնարավորություն ընձեռեցին նոր Սահմանադրության նախագծում վավերագրելու աշխատանքային իրավունքների է՛լ ավելի ընդլայնումը: Դրանք առաջին հերթին վերաբերում են երաշխավորված աշխատանք ստանալու իրավունքին: Այն լրացվում է մասնագիտության, զբաղմունքի և աշխատանքի տեսակի ընտրության այնպիսի իրավունքով, որը համապատասխանի քաղաքացու կոչմանը, ընդունակություններին, պրոֆեսիոնալ պատրաստությանը, կրթությանը և հասարակական պահանջմունքներին: Այս իրավունքի իրականացման համար պակաս կարևոր չէ նաև Սահմանադրության նախագծի այն հոդվածը, որ վերաբերում է երիտասարդության պրոֆեսիոնալ կողմնորոշման համար լայն հնարավորությունների ստեղծմանը, ընդհանուր միջնակարգ կրթության իրավունքին, պրոֆեսիոնալ տեխնիկական, միջնակարգ մասնագիտական և բարձրագույն կրթության լայն զարգացմանը և այլն: Հասարակական արտադրության տեխնիկական կազմի փոփոխության համեմատ ավելանում է այն մասնագիտությունների թիվը, որոնց նախնական ուսուցումը տարվում է միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում և բուհերում: Աշխատավորների պրոֆեսիոնալ-որակական կազմի փոփոխությու-



նը, հանրակրթական մակարդակի բարձրացումը, իրենց հերթին, հանգեցնում են նրանց աշխատանքային եկամուտների աճին, նյութական ու կուլտուրական պահանջմունքների լրիվ բավարարմանը: Դրա հետ մեկտեղ, ինչպես նշվեց, բնակչության բազմակողմանի պահանջմունքների բավարարման գործում անընդհատ կբարձրանա սպառման հասարակական ֆոնդերի դերը: Ռեալ աշխատավարձի մշտական բարձրացումը կուղեկցվի սպառման հանրային ֆոնդերի առավել արագ աճով: 1960—1975 թթ. ՍՍՀՄ-ում ըստ աշխատանքի բաշխման ֆոնդն ավելացել է 188, իսկ սպառման հասարակական ֆոնդերը 230 տոկոսով: Ահա թե ինչու Սահմանադրության նախագծում հատուկ նշվում է. «Հասարակության անդամների պահանջմունքներն ավելի լրիվ բավարարելու նպատակով ստեղծվում են սպառման հանրային ֆոնդեր: Պետությունը հասարակական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների լայն մասնակցությամբ ապահովում է այդ ֆոնդերի աճն ու բաշխումը»:

ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներով հնգամյակի տարիներին նախատեսվում է սպառման հանրային ֆոնդերի հաշվին բնակչությանը տրվող վճարումներն ու արտոնությունները ավելացնել 28—30 տոկոսով: Սոցիալիստական պետությունը սպառման հասարակական ֆոնդերի հաշվին լուծում է բնակչության առողջապահության, լուսավորության, կրթության և կադրերի պատրաստման ու վերապատրաստման, սերնդի պահպանության ու դաստիարակման, մայրության ու մանուկների պաշտպանության և, ընդհանուր առմամբ, մարդկանց սոցիալ-տնտեսական բազմազան պահանջմունքները:

Սահմանադրության նախագծի կարևոր հոդվածներից մեկը վերաբերում է կանանց իրավունքներին, դրանց իրականացման, ինչպես նաև կանանց աշխատանքի ու առողջության պահպանման միջոցառումներին, մայրության և մանկության իրավական պաշտպանությանը, նյութական ու բարոյական օժանդակությանը՝ ներառյալ հղի կանանց և մայրերին վճարովի արձակուրդներ և այլ արտոնություններ տալը, միայնակ մայրերին ցույց տրվող պետական օգնությունը: Հասկանալի է, որ այդ միջոցառումների ծավալն ու մասշտաբը որոշվում են արտադրության միջոցների հանրային սեփականության հետագա զարգացման մակարդակով:

Սահմանադրության այս հոդվածի հիմքում ընկած է ՍՄԿԿ XXV համագումարի այն պահանջը, որով նախատեսվում է տասներորդ հնգամյակում աշխատող կանանց համար սահմանել մասնակի վճարովի արձակուրդ՝ երեխային խնամելու համար, երեխաներ ունեցող կանանց ավելի լայն հնարավորություններ ընձեռել աշխատելու ոչ լրիվ աշխատանքային օր, կամ ոչ լրիվ աշխատանքային շաբաթ, ինչպես նաև աշխատելու տանը, ընդլայնել բազմազավակ մայրերի կենսաթոշակային ապահովության արտոնությունները:

Սոցիալիզմի օրոք բարձր է գնահատվում մոր տնային աշխատանքն ընդհանրապես և երեխաներ մեծացնելու համար նրա գործադրած ջանքերը՝ մասնավորապես:

Զարգացած սոցիալիզմի պայմաններում պետության դեմոգրաֆիական քաղաքականությունն ամեն կերպ նպաստում է կանանց հասարակական-արտադրական և մայրական պարտականությունների զուգակցմանը: Բնականաբար, արտադրաուժերի հետագա վերելքը և աշխատանքի արտադրողականության անշեղ աճը կհանգեցնեն մայրական պարտականությունները կատարելու համար հասարակության կողմից կանանց ընձեռվող հնարավորությունների մեծացմանը: Դա արտահայտվելու է ո՛չ միայն հասարակության հաշվին երեխաների խնամքի ու դաստիարակության շրջանակների ընդլայնման, բնակչության կենցաղային սպասարկման և այլ ճյուղերի հանրայնացման մակարդակի բարձրացման, այլև հանրային տնտեսությանը նրանց մասնակցելու աշխատաժամանակի կրճատման մեջ: Խոսքը տվյալ դեպքում վերաբերում է օրվա ընթացքում տղամարդկանց համեմատ կանանց աշխատաժամանակի կրճատմանն ընդհանրապես: Այս առումով միանգամայն նոր ի-

մատ է ստանում հասարակության համար ավելի շատ երեխաներ մեծացրած մայրերի կենսաթոշակի հարցը։ Մեր կարծիքով, կենսաթոշակի չափը պետք է որոշել ո՛չ միայն ըստ հանրային տնտեսությունում մարդու կատարած աշխատանքի որակի, քանակի, այլև ընդհանրապես հանրօգուտ աշխատանքին նրա ունեցած մասնակցության համապատասխան։ Կենսաթոշակի հիմքում պետք է դրվի հանրօգուտ աշխատանքն ընդհանրապես։ Այդ դեպքում համեմատաբար ավելի բարձր կենսաթոշակ կստանան այն մայրերը, որոնք, հանրային տնտեսությանն ակտիվորեն մասնակցելու հետ մեկտեղ, մեծացրել են թվով ավելի շատ երեխաներ։ Հանրային տնտեսությանն ակտիվորեն մասնակցած, բայց քիչ երեխաներ մեծացրած կանանց կենսաթոշակը, հավանաբար, պետք է գերազանցի հանրային տնտեսությանը քիչ մասնակցած, բայց ավելի շատ երեխաներ մեծացրած կանանց համար սահմանվող կենսաթոշակին։ Մեր հասարակությունը հասել է զարգացման այնպիսի մակարդակի, երբ կենսաթոշակ կարող է հատկացնել նաև հանրային տնտեսությանը չմասնակցած, բայց երեխաներ մեծացրած կանանց՝ իրենց երեխաների թվին համապատասխան։

Սահմանադրությունն ընդունվում է տևական ժամանակաշրջանի համար։ Գալիք հնգամյակները, որոնք կբնութագրվեն արտադրաուժերի նոր հզոր վերելքով և սպառման հանրային ֆոնդերի աննախընթաց աճով, կհանգեցնեն կնոջ մայրական ու հասարակական պարտականությունների իրականացման համար ավելի կատարյալ ու խելացի համապատասխանություն ստեղծելուն։ Ուստի, կարծում եմ, Սահմանադրության մեջ դրանք ընդհանուր գծերով պետք է արտացոլվեն։ Հետևաբար, Սահմանադրության նախագծի 35-րդ հոդվածում կանանց համար նախատեսվող այլ արտոնությունների վերաբերյալ միտքը կարելի է լրացնել հետևյալ ձևակերպումով. «անչափահաս երեխաներ ունեցող կանանց համար սահմանել ավելի կարճ աշխատանքային օր, օրվա միջին աշխատավարձի պահպանումով, կենսաթոշակի անցնելու ժամկետներն ու չափը սահմանելիս նկատի առնել նրանց խնամած ու դաստիարակած երեխաների թիվը»։

Սահմանադրության նախագիծը սովետական ժողովրդի ձեռք բերած նվաճումների մի նոր փայլուն վկայություն է։

**Վ. Ե. ԽՈՋԱԲԵԿՅԱՆ**
Տնտեսական գիտությունների դոկտոր

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱԶԳԵՐԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՆՎԱՃՈՒՄԸ

ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՔՆՆԱՐԿՄԱՆ ներկայացված Սովետական Միության նոր Սահմանադրության նախագծի 3-րդ բաժինը նվիրված է ՍՍՀՄ ազգային-պետական կառուցվածքին։ Այստեղ, առաջին հերթին, կրկին վավերագրվում է սովետական ազգերի պատմական նվաճումը, նրանց միասնությունն ու համախմբվածությունը մեկ միասնական պետության՝ ՍՍՀՄ կազմի մեջ։ «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը միասնական միութենական բազմազգ պետություն է՝ կազմված ազգերի ազատ ինքնորոշման և իրավահավասար Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների կամավոր միավորման հիմունքով»,— ասված է նախագծի 69-րդ հոդվածում։ Այդ հոդվածը մարմնավորում է անցած տարիների ընթացքում ՍՍՀՄ-ի՝ որպես ֆեդերատիվ միութենական պետության, զարգացումը, որի բնորոշ գծերից մեկն էլ նրա կազմի մեջ մտած սուվերեն սովետական հանրապետությունների հարաճուն մերձեցման պրոցեսն է։ Հենց դրա համար էլ միանգամայն տեղին արձանագրվում է, որ լինելով միութենական պետություն, «ՍՍՀՄ-ը մարմնավորում է սովետական ժողովուրդների պետական միասնությունը...»։

Ինչպես նշել է Լ. Ի. Բրեժնևը Սահմանադրության նախագծի վերաբերյալ



ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում տված զեկուցման մեջ, կուսակցությունը Սահմանադրությունը դիտում է ո՛չ միայն իրավաբանական ակտ, այլև որպես կարևորագույն քաղաքական փաստաթուղթ։ Սահմանադրության նախագիծը բխում է սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում ձեռք բերված նվաճումներն օրենսդրականորեն ամրապնդելու սովետական սկզբունքից և հուշակում է մեր հասարակարգի առջև ծառացած հիմնական խնդիրներն ու նպատակները։ Դրան համապատասխան նախագծի 69-րդ հոդվածի 2-րդ մասում արձանագրված է, որ ՍՍՀՄ-ը սովետական բոլոր ազգերին և ազգություններին համախմբում է կոմունիզմի համատեղ կառուցման նպատակով։

ՍՍՀՄ-ի՝ որպես միութենական պետության, բնորոշ հատկանիշներից է Միության և նրա կազմի մեջ մտնող հանրապետությունների սուվերենության ներդաշնակ զուգորդումը, ավելին՝ Միությունը կոչված է պահպանելու միութենական հանրապետությունների պետական սուվերենությունը։

Մեր գաղափարական հակառակորդները ճգնում են խեղաթյուրել սովետական միութենական հանրապետությունների իրավաբանական վիճակը, բանն այնպես ներկայացնել, թե իբր միութենական հանրապետությունները որպես պետություններ խամրում են։ Սահմանադրության քննարկվող նախագիծը հերքում է այդ անհեթեթությունը։ Պահպանելով 1936 թ. Սահմանադրությամբ նախատեսված երաշխիքները, նոր Սահմանադրության նախագիծը միութենական հանրապետությունների սուվերենությունը հարգելու ու պահպանելու նոր երաշխիքներ է սահմանում։ Նախագծի 76-րդ հոդվածում վավերագրված է, որ «Միութենական հանրապետությունը ՍՍՀ Միության իրավասությանը վերապահված հարցերի լուծմանը մասնակցում է ՍՍՀՄ Գերագույն սովետում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունում, ՍՍՀՄ կառավարությունում և ՍՍՀ Միության մյուս մարմիններում»։ Նախագծում, ինչպես և 1936 թ. Սահմանադրության մեջ, նշվում է, որ յուրաքանչյուր միութենական հանրապետության իրավունք է վերապահվում ազատորեն դուրս գալու ՍՍՀՄ-ից։ ՍՍՀՄ ազգային-պետական կառուցվածքի հարցերի կարգավորմանը վերաբերող համապատասխան հոդվածները բխում են մեր երկրի զարգացման տասնամյակների փորձից, ՍՍՀՄ ֆեդերատիվ կառուցվածքի հիմնական ձևերի կենսունակությունից։ Այդ պատճառով էլ նախագծում որևէ սկզբունքային փոփոխություն չի մտցված սովետական սոցիալիստական ֆեդերացիայի ձևերի մեջ։

Ինչպես գործող Սահմանադրությունը, այնպես էլ համաժողովրդական քննարկման ներկայացված նոր Սահմանադրության նախագիծը վավերագրում է սովետական բոլոր ազգերի ու ազգությունների ազգային պետականության պատմականորեն կազմավորված ձևերը, սահմանում նրանցից յուրաքանչյուրի իրավական ստատուսը։ Այսպես, նախագծի 75-րդ հոդվածը սահմանում է, որ 72-րդ հոդվածում նշված շրջանակներից դուրս միութենական հանրապետությունը ինքնուրույն կերպով է իրականացնում պետական իշխանությունը իր տերիտորիայում։ Ինքնավար հանրապետությունը ՍՍՀ Միության և Միութենական հանրապետության իրավունքների շրջանակներից դուրս ինքնուրույն կերպով է լուծում իր իրավասությանը վերաբերող հարցերը (հոդ. 81)։ Նախագծում համապատասխանաբար սահմանվում է ինքնավար մարզի մասին օրենքի և ազգային օկրուգի կանոնադրության ընդունման կարգը, որոնք արտացոլում են ազգային մարզի, ազգային օկրուգի ազգային առանձնահատկությունները։

Ամփոփելով Սահմանադրության նախագծի՝ ՍՍՀՄ ազգային-պետական կառուցվածքին նվիրված սահմանադրային դրույթներն ու սկզբունքները, կուսակցության Կենտկոմի մայիսյան պլենումում Լ. Ի. Բրեժնևը շեշտեց. «Նախագծում ամբողջությամբ վերցրած ազգային-պետական կառուցվածքի հարցերի լուծումը ապահովում է մեր բազմազգ Միության ընդհանուր շահերի և այն կազմող հանրապետություններից յուրաքանչյուրի շահերի իրոք դեմոկրատական զուգակցումը, ապահովում է մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների համակողմանի բարգավաճումն ու անշեղ մերձեցումը»։

Կուզենայի անել մի քանի առաջարկություններ։ Սահմանադրության նա-

պահպանմամբ, կոոպերատիվ և անհատական բնակարանային շինարարությանը ցույց տրվող օժանդակությամբ, բնակարանային շինարարության ծրագրի իրականացման համեմատ հատկացվող բնակտարածությունը հասարակական վերահսկողության ներքո արդարացի բաշխելով, ինչպես նաև ոչ բարձր բնակարանավարձով։

Միայն անցած՝ իններորդ հնգամյակում ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին երկրում կառուցվել և շահագործման է հանձնվել 544 մլն քմ. բնակմակերես, որը 55 մլն քաղաքացիների հնարավորություն է ընձեռել փոխադրվելու նոր բնակարաններ։ Ընթացիկ հնգամյա պլանով նախատեսված է կառուցել 545—550 մլն քմ. բնակելի տարածություն։ Դա հնարավորություն կընձեռի երկրի ամեն հինգերորդ մարդուն ապահովել հարմարավետ բնակարանով։ Պետական բնակարանային շինարարությունը ֆինանսավորելուց դատ, սովետական պետությունը պետական վարկի կարգով օժանդակում է քաղաքացիներին՝ իրականացնելու կոոպերատիվ ու անհատական բնակարանային շինարարություն։ Միաժամանակ «ՍՍՀՄ քաղաքացիների համար երաշխավորվում է բնակարանի անձեռնմխելիությունը։ Ոչ ոք իրավունք չունի առանց օրինական հիմքի բնակարան մուտք գործել՝ հակառակ այնտեղ բնակվող անձանց կամքի»։

Քաղաքներում բնակարանային հիմնական ֆոնդը կազմում է սովետական պետության սեփականության մի մասը։ Այն աշխատավորների դեպուտատների տեղական սովետների, հիմնարկությունների, ձեռնարկությունների, կազմակերպությունների տնօրինության ներքո է։ Այժմ ուժեղ թափով բնակարանային շինարարություն է իրականացվում ո՛չ միայն քաղաքներում, այլև քաղաքատիպ նոր ավաններում։ Ավելին, պետական միջոցների հաշվին բնակելի շենքեր են կառուցվում նույնիսկ գյուղական վայրերում։ Հետևաբար, անժխտելի է, որ պետական բնակելի ֆոնդի սահմանները վաղուց դուրս են եկել քաղաքի շրջանակներից։ Այդ իմաստով էլ մենք գտնում ենք, որ նախագծի 10-րդ հոդվածի 2-րդ պարբերության վերջում պետք է նշել, որ պետությանն է պատկանում նաև «հիմնական բնակարանային ֆոնդը քաղաքներում և քաղաքատիպ ավաններում»։

Համաժողովրդական լայն քննարկման արդյունքների հիման վրա ՍՍՀՄ Գերագույն սովետը կընդունի մեր երկրի հիմնական օրենքը՝ ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը։

**Գ. Հ. ՂԱՐԱԽԱՆՅԱՆ**
Իրավաբանական գիտությունների թեկնածու



# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆԸ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԾՆՈՒՆԴ Է

**Ռ. Դ. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
ՀԿԿ Հոկտեմբերյանի շրջկոմի առաջին քարտուղար

ՀԻՇԱՐԺԱՆ ՕՐԵՐ Է ԱՊՐՈՒՄ մեր երկիրը. Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի նախապատրաստությանը զուգադիպել է սովետական պետության ու ժողովրդի համար մի կարևոր իրադարձություն՝ ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկումը։ Սովետական պետության ինչպես նախորդ, այնպես էլ նոր հիմնական օրենքները Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի արգասիք են։ Նոր Սահմանադրության նախագիծը ևս օրենսդրորեն ամրապնդում է Մեծ Հոկտեմբերի նվաճումները, լայն հեռանկարներ բացում սովետական ժողովրդի առավել բարեկեցիկ ու երջանիկ կյանքի, մեր հայրենիքի աննախադեպ ու համակողմանի բարգավաճման ու հզորացման համար։

Հոկտեմբերյանի շրջանի աշխատավորական կոլեկտիվները, կուսկազմակերպությունները մեծ հետաքրքրությամբ են ուսումնասիրում նոր Սահմանադրության նախագիծը, նրա յուրաքանչյուր հոդվածն ընկալում որպես սոցիալիստական պետության և կոմունիստական կուսակցության ջերմ հոգատարության արտահայտություն բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության նկատմամբ։ Աշխատավորական բոլոր խավերը միահամուռ հավանություն են տալիս նոր Սահմանադրության նախագծին և պատրաստակամություն հայտնում՝ ընթանալու կուսակցության նշած ուղիով, լավ գործերով դիմավորելու Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձը։

Հոկտեմբերյանի աշխատավորները քաջ գիտակցում են, որ շրջանի տնտեսական և սոցիալ-կուլտուրական նվաճումները ձեռք են բերվել մեծ Հոկտեմբերի, սոցիալիստական հասարակարգի ընձեռած հնարավորությունների շնորհիվ։

Պատմությունը, անցյալ ժամանակները դաժան են եղել Հայաստանի և նրա մասը կազմող Սարդարապատի համար։ Այդ անունն է կրել այն գյուղը, որ հիմա Հոկտեմբեր է կոչվում։ Անցյալ դարի սկզբներին այս դաշտ-անապատի կենտրոնական մասում (ներկայիս Հոկտեմբեր գյուղի մոտ) Երևանի սարդարը կառուցում է մի բերդ, որը զարհուրելի սֆինքսի պես ծանրացել էր սերունդների վրա։ Միայն 1827 թ. սեպտեմբերին ռուսական զորքերը, գեներալ Պասկևիչի գլխավորությամբ գրավեցին այն, հօդս ցնդեցնելով սարդարի անպարտելիության առասպելը։

եղել և հիշում են, թե ինչպես շրջսովետի գործկոմի նախկին շենքի (այժմ № 4 միջնակարգ դպրոց) փորված հիմքում տեղադրվեց մի շիշ, որի մեջ դրված էր Հոկտեմբերյանի ստեղծման ակտը՝ շրջանի կուսակցական ու սովետական կազմակերպությունների ղեկավարների ստորագրությամբ։

Տարիների հետ նորաստեղծ քաղաքն ընդարձակում է իր սահմանները։ Մինչև 1940 թ. կառուցվում են շրջգործկոմի, կապի բաժանմունքի, զինկոմիսարիատի, պետական և բնակելի բազմաթիվ շենքեր։ Շատերը չէին հավատում, որ դարավոր աղուտների վրա ու չեչաքարերի այս մոռացված անկյունում վեր կհառնեն նոր քաղաք, նոր առօրյայով, սոցիալիզմ կառուցող մարդկանց շենացող Հոկտեմբերյանը։

Հիրավի, քաղաքն այս ծնվեց անկոտրում ջանքերով այն սերնդի, որն այժմ տակավին մեզ հետ ապրում է անցած դժվարին, սակայն հիշարժան օրերի բերկրանքը։

1930—40-ական թվականներին շրջանի էկոնոմիկայի զարգացման ու ամրապնդման գործում իրենց հմտությունն ու ջանքերը ներդրեցին կուսակցության շրջկոմի քարտուղարներ Ա. Արզումանյանը, Ն. Կուրղինյանը, Ն. Ներսիսյանը, ՄՏ կայանի դիրեկտոր Գ. Սուքիասյանը, հին բոլշևիկներ Ա. Եղիազարյանը, Ս. Ստեփանյանը, Ս. Անտոնյանը և ուրիշներ։

Շրջանի բոլոր անկյուններում կառուցման անկասելի թափը, հարվածային աշխատանքը այն բանի պայծառ վկայությունն էին, որ կոլեկտիվներն անձնվիրությամբ ծառայում էին սոցիալիզմի գաղափարներին, նոր հարաբերությունների ստեղծման ոլորտում մարդը զինվում էր նոր աշխարհայացքով, դառնում ավելի գործնական ու սկզբունքային, պայքարում հանրային տնտեսության առավել հզորացման համար։

Երբ սկսվեց Հայրենական մեծ պատերազմը, Հոկտեմբերյանն արդեն գյուղատնտեսական արտադրության խոշոր շրջան էր և արտադրում էր հանրապետության բամբակի, խաղողի, պտղի ու բանջարեղենի զգալի մասը։ Դրվել էին գալիք գործարանների հիմքերը, նոր ակոսներ էին բացվում յուրացվող հողերում։ Բայց ինչ-որ բան կիսատ մնաց, պատերազմը հայրենիքի պաշտպանության համար զորակոչեց կոլտնտեսականին և կառուցող բանվորին։ Ռազմի դաշտերում մարտնչեցին մեծ թվով հոկտեմբերյանցիներ, որոնցից 1465-ը ընկան հայրենիքի ու ժողովրդի սրբազան գործի համար։ Մեծ հայրենականի տարեգրությունն իր անմահ սխրանքով զարդարեց Լուկաշինի անվան սովխոզի բրիգադավար, Սովետական Միության հերոս Հունան Ավետիսյանը, որն իր կրծքով փակեց թշնամու հրակնատը։ Նրա օրինակով, հրամանատարի կյանքը փրկելու համար, քաջի մահով զոհվեց բամբակաշատցի երիտասարդ Աշոտ Մարգարյանը։ Շատ են դրվագները այն անձնազոհ հերոսության, որ տարբեր ռազմաճակատներում կատարեցին մեր շրջանի խիզախ որդիները։ Քաջի մահով ընկան Պ. Եղոյանը, Դ. Մարգարյանը, Ա. Արշակյանը, Գ. Ոսկանյանը, Ս. Միրզոյանը, Ա. Լալայանը և շատ ուրիշներ՝ հավատարիմ մնալով կոմունիստական կուսակցության գաղափարին, հայրենիքի ու ժողովրդի սիրուն։

Պատերազմի տարիներին թիկունքում հերոսական աշխատանք կատարեցին հոկտեմբերյանցիները՝ ամեն ինչ տալով ռազմաճակատին։ Շրջանի աշխատավորները սեփական խնայողությունների հաշվին պետությանը նվիրեցին մեկ միլիոն 150 հազար ռուբլի՝ մարտական ինքնաթիռների էսկադրիլիա կառուցելու համար։ Այս առթիվ շրջանի աշխատավորությանը նամակով շնորհակալություն հայտնեց այն ժամանակ բանակի գեներալ Հ. Բաղրամյանը։

Շրջանի աշխատավորները կրկնապատկված ուժերով ձգտում էին բոլոր տեղամասերում պահպանել արտադրության ռիթմը, մշտապես բարձրացնել կազմակերպական ու գործնական աշխատանքի ոգին։ Առանձնապես խիզախում էին կանայք։ Հանրային դաշտերում նրանց կատարածը վեր էր սպասածից։ Կանայք չէին ընկճվում, հավատով էին մեծացնում երեխաներին, հավատով էին սերմը պահ տալիս հողին և հավատով սպասում ամուսինների ու զավակների վերադարձին, հաղթանակի օրվան։

Եվ երբ եկավ բաղձալի 1945 թվականի մայիսի 9-ը, տուն դարձող զինվորները ականատես եղան, համոզվեցին, որ այն դժվարին տարիներին մարդիկ



Հոկտեմբերյանում չեն հուսալքվել։ Նրանք կառուցել են պահածոների ու մեխանիկական գործարաններ, պետական բնակելի ու հասարակական շենքեր, յուրացրել նոր հողեր։ Մարդիկ պայքարել են հարազատ շրջանը շեն ու ծաղկուն դարձնելու ծրագիրն իրագործելու համար։ Գեղեցիկ ապագայի, ժողովրդի երջանկության ու հայրենիքի ազատության համար իրենց արյունը չխնայած հերոսների հիշատակը հավերժացնելու նպատակով երախտապարտ հոկտեմբերյանցիները գյուղերում և ավաններում կառուցել են հուշարձան-կոթողներ։

Հետպատերազմյան տարիներին, ինչպես ողջ երկիրը, Հոկտեմբերյանի շըրջանը նույնպես սկսեց ընթանալ վերելքի ուղիով, մարդիկ նոր ուժով ու մեծ եռանդով անցան գործի։ Հողաշինարարության կարևոր պրոբլեմները լուծելու, նախագծումները, գյուղերի վերակառուցման նոր հատակագծերը կյանքի կոչելու խնդիրները դարձան շրջանի վերընթացի ապահովման ծրագրային ուղղությունները։ 1950 թ. բամբակազտիչ գործարանը պլանից դուրս տվեց մոտ 600 տոննա զտած բամբակ, իսկ պահածոների գործարանը՝ 65 հազար պայմանական տուփ պահածո։ Նոր թափով ծավալվեց գյուղական շինարարությունը։

Սոցիալիստական գործարար մրցությունը տասներորդ հնգամյակի առաջին տարում փայլուն հաջողություններ բերեց շինարարներին։ Կապիտալ շինարարության պլանը կատարվեց 131 տոկոսով։ Բարձր ցուցանիշների համար շրջանը մրցության մեջ հաղթող ճանաչվեց և արժանացավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների սովետի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի՝ արդյունաբերության և շինարարության համար սահմանված փոխանցիկ դրոշին և առաջին կարգի մրցանակի։

Մտեք շրջանի ցանկացած գյուղը. առաջին հայացքից աչք կշոյեն կուլտուրայի օջախներն ու դպրոցական շենքերը, կուլտուր-կենցաղային ծառայությունների շինությունները, արտադրության մարդկանց գեղեցիկ առանձնատները։ Գյուղերում հսկայական առաջընթաց է կատարվել գյուղի և քաղաքի միջև եղած էական տարբերությունների վերացման ասպարեզում։ Կոլտնտեսականն օգտվում է հեռուստացույցից ու ռադիոյից, ստանում մի քանի անուն թերթ ու ամսագիր, իր բնակարանում ունի խմելու ջուր, բնական գազ, շատերը նաև բաղնիք ու ջեռուցման սիստեմ։

1976 թ. նախատեսված 40 հազարի փոխարեն շրջանը պետությանը հանձնեց 41 հազար 496 տոննա խաղող, 44,5 հազարի դիմաց՝ 48,5 հազար տոննա բանջարեղեն, 35-ի փոխարեն՝ 41 հազար տոննա խորդենու հումք։ Կատարվեցին ու գերակատարվեցին գյուղատնտեսական մի շարք այլ մթերքների վաճառքի պլանային առաջադրանքները։ Խաղողի և բանջարեղենի արտադրության ասպարեզում ձեռք բերած բարձր ցուցանիշների համար անցյալ տարի շրջանն արժանացավ ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների սովետի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի երկրորդ և երրորդ կարգի մրցանակներին։

Այժմ իր ծանրակշիռ դերն է խաղում նաև շրջանի արդյունաբերությունը։ Հոկտեմբերյանի մակնիշով արտադրվող ուղղահայաց շաղափող հաստոցները լավ ճանաչում են գտել պատվիրատուների մոտ և մեծ պահանջարկ ունեն մեր Միությունում ու արտասահմանյան շուրջ 10 երկրներում։ Շրջանի արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալում որոշակի է աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր պահածոների գործարանի բաժինը։ Հաստատուն ճանապարհ են ընտրել վերջին տարիներին գործարկված ֆուրնիտուրայի, գազասարքավորումների գործարանները, շինանյութերի և իրերի կոմբինատը, կահույքի ֆաբրիկան և այլն։ Այս տարի գործարկվելու է ապակե տարաների գործարանի առաջին վառարանը, իսկ ընդհանուր կարողության լրիվ շահագործմամբ այն երկրին տարեկան կտա 239 միլիոն հատ ապակետարա։ Դժվար չէ նկատել, որ ավանդական գյուղատնտեսական շրջանն այսօր լրիվ չափով մտնում է արդյունաբերական հունի մեջ։ Զարգացման երկու ուղղություններն էլ պայմանավորված են մեկը մյուսով և ունեն ռեալ հեռանկարներ։ Գյուղատնտեսական հումքի վերամշակման գործում շրջանի համար կարևոր դեր ունեն պահածոների և գինու գործարանները։ Առաջինը 1976 թվականին երկրին հանձնեց 92.700 պայմանական տուփ 80 տեսակի պահածո, իսկ գինու գործարաններն ու ընդունող կետերը՝ 2 միլիոն 87 հազար դեկալիտր գինի։ 1950 թ.

11-ի դիմաց այժմ շրջանում կա արդյունաբերական 19 ձեռնարկություն, իսկ արտադրության ընդհանուր ծավալը 78 միլիոն 50 հազարից անցած տարի հասավ 131 միլիոն 490 հազար ռուբլու:

Ինչպես գյուղատնտեսության, այնպես էլ արդյունաբերության առաջընթացը շրջանը դուրս բերեց լայն ասպարեզ: Հոկտեմբերյանն այժմ տալիս է հանրապետության խաղողի արտադրության շուրջ 20 տոկոսը, բանջարեղենի՝ 25, պտղի՝ 17, խորդենու՝ 95 տոկոսը և այլն:

Պատմության մեջ ակնթարթ թվացող կարճ ժամանակաշրջանում Հոկտեմբերյանը դարձավ գյուղատնտեսության և արդյունաբերության զարգացած շրջան, անհամեմատելիորեն բարձրացավ մարդկանց կուլտուրական ու կենցաղային մակարդակը: Շրջանում և քաղաքում գործում են 30 մանկապարտեզ, 50 դպրոցներում սովորում են 24 հազար 237 աշակերտներ, նրանց ուսուցման և դաստիարակության գործին են նվիրված բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն ունեցող 1618 ուսուցիչներ: Առողջապահական օբյեկտների քանակը հասնում է 56-ի, բժիշկների և միջին բուժաշխատողների թիվը՝ 530-ի:

Մեզ մոտ՝ Հոկտեմբերյանի հողում, սկիզբ դրվեց Հայաստանի ատոմային էլեկտրակայանի շինարարությանը: Այս գործում մեկ անգամ ևս դրսևորվեցին ռուս և սովետական մյուս ժողովուրդների եղբայրական բարեկամությունն ու անշահախնդիր օգնությունը: Ռեկորդային կարճ ժամանակամիջոցում մոնտաժվեց և նախապատրաստվեց առաջին էներգաբլոկը, որը մեծ իրադարձություն էր մեր կյանքում: Այն արդեն երկրին տվել է շուրջ 170 միլիոն կիլովատտ-ժամ էլեկտրաէներգիա: Այս մեծ կառույցի առաջին հերթի գործարկման առթիվ շինարարներին ողջունեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը: Այդ ողջույնն ընդունելով որպես իրենց աշխատանքի բարձր գնահատական՝ շինարարները նոր եռանդով շարունակում են երկրորդ բլոկի կառուցումը:

Արժեքավորելով ձեռք բերածը, կառուցածն ու կերտածը՝ մենք, այնուամենայնիվ, պետք է խորհենք վաղվա օրվա մասին, գտնենք նորն ու առաջավորը, հայտաբերենք չօգտագործված ռեզերվները, անդուլ գործադրենք մեր մտքի և բազկի ուժը, որպեսզի ետ չմնանք ժամանակից, ապահովենք աճման բարձր տեմպերը կյանքի բոլոր բնագավառներում: Դրա համար մենք ձգտում ենք առավելագույն արդյունավետությամբ օգտագործել հողի յուրաքանչյուր հեկտարը, յուրաքանչյուր մեքենան, կերի ամեն մի ցենտները, պարարտանյութերի յուրաքանչյուր տոննան, ամեն կերպ ամրացնել վերընթացի հիմքերը: Սկզբնական կուսկազմակերպությունները կատարելագործում են իրենց աշխատանքի ձևերն ու մեթոդները, մասսաներին ներգրավում սոցիալիստական գործարար մրցության մեջ, ամեն ինչ անում, որ բոլորը լինեն մեծ Հոկտեմբերի 60-ամյակի պատվին ծավալված մրցության ավանգարդում: Հենց այդ ոգով էլ սկսվեցին ընթացիկ տարվա աշխատանքները: Ինչպես խաղողի և պտղատու այգիներից, այնպես էլ բանջարա-բոստանային և մյուս կուլտուրաների ցանքադաշտերից շրջանը բարձր բերքի մեծ սպասելիքներ ունի:

Սրանք ընթացիկ գործեր են: Մեր աշխատանքում մեծ ու կարևոր նշանակություն ունեն հեռանկարային հարցերը, որոնց պատշաճ լուծմամբ է պայմանավորված Հոկտեմբերյանի վաղվա առաջընթացը: Մեր շրջանի համար առանցքային նշանակություն ունեն խաղողագործությունն ու պտղաբուծությունը: Սակայն վերջին տարիների արդյունքների վերլուծությունը վկայում է, որ այս բնագավառում դեռևս կան անհապաղ լուծում պահանջող հարցեր: Շրջանի կոլեկտիվ ու պետական տնտեսություններում վերջին երկու հնգամյակների ընթացքում խաղողի և պտղի այգիները զգալիորեն կրճատվել են: Կան այնպիսի տարածքներ, որոնք արդյունաբերական արտադրանք չեն տալիս:

Այժմ օրակարգում է խաղողի ու պտղատու այգիների ընդարձակման, նոսրության վերացման, նոր հողերի յուրացման խնդիրը: Այդ պահանջներից ելնելով՝ խաղողի այգիների հիմնման և վերակառուցման լուրջ աշխատանքներ կատարվեցին 1976 թվականին: Հիմնվեց ու վերակառուցվեց շուրջ 435 հեկտար խաղողի և 232 հեկտար պտղատու այգի: Խաղողի արմատակալների տնկման աշխատանքները մեքենայացվեցին: Նախատեսվում է այգիների հիմ-



նումն ու վերակառուցումը այնպես կատարել, որ, լարային սիստեմ անցկացնելուց հետո, լրիվ մեքենայացվեն աշխատատար բոլոր պրոցեսները: Խաղողի և պտղատու այգիների աստիճանական վերափոխմամբ, մեր կարծիքով, հնարավոր կլինի վերացնել խաղողի սորտերի և պտղատու ծառերի բազմապիսությունը, շտկել սորտաշրջանացման, դրանց ընտրության գործում եղած սխալները, իրականացնել մշակության նպատակային մասնագիտացումը: Նոր այգիների հիմնման ու վերակառուցման, ինչպես նաև ապագայում նոր հողերի յուրացման և ջրարբիացման հետ խիստ կարևոր է դառնում մեծ քանակությամբ տնկանյութ ունենալու, հետևապես նաև՝ տնկարանային մասնագիտացված տնտեսություն ստեղծելու հարցը: Մտադիր ենք այս գործը կազմակերպել գիտականորեն, որը կբացառի նախկինում կատարած սխալները՝ նոր ստեղծվող այգիներին մատակարարելով միայն ու միայն արժեքավոր սորտայնության արմատակալներ:

Շրջանի երկրագործության համար մեծ հեռանկարներ են սպասվում առաջիկա տարիներին: Ախուրյանի ջրամբարը շահագործման հանձնելուց հետո Հոկտեմբերյանի արևմտյան մասում ընկած ավելի քան 12 հազար հեկտար հողատարածություն Թալինի նոր ջրանցքի գործարկմամբ կդառնա ոռոգելի, կկազմակերպվեն հինգ նոր տնտեսություններ: Խիստ կարևոր է, որ այսօրվանից սկսվեն այդ հողերի մաքրման, մելիորացման, նոր բնակավայրերի նախագծման և կառուցման աշխատանքները, որպեսզի ջրամբարի շահագործման հետ միաժամանակ դրանք ներգրավվեն շրջանառության մեջ: Այդ հարցերի վերջնական լուծումն ունի ժողովրդատնտեսական խոշոր նշանակություն, այն հնարավորություն կտա լրացուցիչ արտադրել 30—35 հազար տոննա խաղող, 10—15 հազար տոննա պտուղ և գյուղատնտեսական այլ մթերքներ: Փաստորեն շրջանում կծնվի մի նոր Հոկտեմբերյան:

Լավատեսորեն նայելով շրջանի ապագային՝ հողագործության, անասնապահության բնագավառի մեր աշխատողները բարձր պարտավորություններ են ստանձնել հոբելյանական այս տարում: Նրանք պարտավորվել են պետությանը վաճառել 1.100 տոննա հացահատիկ, 41.400 տոննա խաղող, 17.200 տոննա պտուղ, 46 հազար տոննա բանջարեղեն, 26.700 տոննա բոստանային կուլտուրա, 36.500 տոննա խորդենու հումք, 12.000 տոննա կաթ, 1.920 տոննա միս, 102 տոննա բուրդ, 3,5 միլիոն հատ ձու և այլ մթերքներ: Ստանձնած պարտավորությունները լարված են, բայց ռեալ: Շրջանի աշխատավորները մեծ վերելքով են թևակոխել հոբելյանական տարվա ամառը և այսօրվա նախադրյալներով համոզված են, որ կապահովեն 1977 թվականի տնտեսական ծրագրի կատարումը:

Կասկածից վեր է, որ աշխատանքային լավագույն ավանդույթներ ունեցող, մեծ Հոկտեմբերի անունը կրող շրջանի աշխատավորները, ինչպես միշտ, հանդես կգան նոր նախաձեռնություններով, հետևողականորեն կպայքարեն ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումները անշեղորեն կենսագործելու, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության փառապանծ 60-ամյակն արժանի գործերով դիմավորելու համար:

# ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆԸ՝ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԽԹԱՆԻՉ

**Ա. Մ. ՍԱՔԱՆՅԱՆ**

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ մեծ Հոկտեմբերի ծնունդն է, նոր կյանքի բնորոշ հատկանիշներից մեկը: Այն իր բնույթով, առաջադրած նպատակներով և արդյունքներով արմատապես տարբերվում է կապիտալիստական մրցակցությունից, որի գլխավոր նպատակը առավելագույն շահույթի ստացումն է, իսկ հետևանքը՝ թույլ մրցակիցների սնանկացումը: Ընդհակառակը, սոցիալիստական հասարակարգում մրցության նպատակն է ո՛չ միայն նվաճել առաջավոր բնագծեր, հասնել տնտեսական բարձր արդյունքների, այլև օգնել ետ մնացող կոլեկտիվներին, նրանց հասցնել առաջավորների մակարդակին: Եվ միանգամայն օրինաչափ է, որ մեր երկրի վաթսունամյա պատմության ողջ ընթացքում սոցիալիստական մրցությունը հսկայական դեր է խաղացել արտադրողական ուժերի բուռն վերելքի, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համակողմանի զարգացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման գործում:

Արդ է՛լ ավելի է հարստանում սոցիալիստական մրցության բովանդակությունը, ընդլայնվում են նրա ազդեցության ու ընդգրկման ոլորտները: Մրցության հետագա զարգացումն ու ծավալումը, դրա կազմակերպման ձևերի ընդլայնումն ու կատարելագործումը դառնում են ոչ միայն երկրի տնտեսական ու սոցիալ-քաղաքական մեծ ծրագրի իրականացման հզոր լծակ, այլև մարդկանց մերձեցման, նրանց ընկերական փոխօգնության հարաբերությունների խորացման, կոլեկտիվիզմի ամրապնդման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության, ակտիվության ու նախաձեռնության զարգացման, նրանց ստեղծագործական ուժերի մոբիլիզացման կարևոր պայման:

Սոցիալիստական մրցության գլխավոր առանձնահատկություններից մեկը նրա ստեղծարար բնույթն է, որն, առաջին հերթին, արտահայտվում է կոլեկտիվների ու արտադրության առաջավորների՝ սոցիալ-տնտեսական ծրագրի վաղաժամկետ կատարմանը, աշխատանքային մեթոդների կատարելագործմանը, մեքենասարքավորումների ռացիոնալ ու բարձրարտադրողական օգտագործմանն ուղղված հայրենասիրական նախաձեռնություններում:

ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծում հսկայական կարևորություն է տրվում աշխատավորների ստեղծագործական ակտիվությանը և սոցիալիստական մրցությանը: Դրանք, գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների հետ միասին, դիտվում են որպես աշխատանքի արտադրողականության աճի, հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման, ժողովրդական տնտեսության դինամիկ և համամասնական զարգացման վճռական գործոններ: Գործարար մրցության ընթացքում արտադրության մարդիկ դրսևորում են աշխատանքային ու քաղաքական մեծ ակտիվություն, դառնում նախաձեռնող, ընդօրինակում ուսանելին ու լավը, ստեղծագործական որոնումների լիցք ստանում: Սոցիալիզմը,— ժամանակին նկատել է Վ. Ի. Լենինը,— առաջինն է հնարավորություն ընձեռում աշխատավորների մեծամասնությանը ներգրավելու այնպիսի աշխատանքի ասպարեզ, որտեղ նրանք կարող են երևան բերել իրենց, ծավալել իրենց ընդունակությունները, դրսևորել տաղանդներ (տե՛ս Երկեր, հ. 26, էջ 493—494):

Խորացնելով մրցության վերաբերյալ լենինյան դրույթները և ընդհանրացնելով այդ շարժման նախընթաց ժամանակաշրջանի հարուստ փորձը՝ կոմկուսակցությունն այն համարել է մասսաների ստեղծագործական նախաձեռնությունների ու կոլեկտիվիզմի ձևավորման հուժկու միջոց սոցիալիստական ու կոմունիստական շինարարության բոլոր փուլերում:

ՍՄԿԿ XXV համագումարը, անդրադառնալով սոցիալիստական մրցության կազմակերպման ու ծավալման հարցերին, ըստ ամենայնի արժեքավորեց նաև աշխատավորական կոլեկտիվների ու արտադրության առաջավորների հայրենասիրական նախաձեռնությունների վճռական դերը երկրի առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրների իրականացման, սովետական մարդկանց աշխատանքային ու կոմունիստական դաստիարակության, նրանց հոգևոր աշխարհի հարստացման գործում: Համագումարը կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրը համարեց համակողմանի աջակցել այդ շարժումների ու նախաձեռնությունների լայն տարածմանն ու արմատավորմանը: «Կարևոր է, ընկերներ,— խորհուրդ տվեց Լ. Ի. Բրեժնևը, — որ ոչ մի լավ նախաձեռնություն չկորչի» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 114):

***

Կոլեկտիվների ու արտադրության առաջավորների նախաձեռնությունների լայն ծավալումը, նրանց ստեղծագործական ուժերի աննախադեպ վերելքը բխում են սոցիալիստական հասարակարգի բուն էությունից: Մասնակցելով սոցիալիստական մրցությանը, համաժողովրդական այդ հզոր շարժմանը՝ սովետական մարդիկ ավելի բազմակողմանի են դրսևորում իրենց ստեղծագործական ունակությունները, հանդես բերում լավ գործեր կատարելու հաստատակամություն, պարտքի խոր գիտակցությամբ վերաբերվում իրենց աշխատանքային ու արտադրական պարտականությունների կատարմանը: Համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու վերաբերյալ կուսակցության ու կառավարության ամեն մի որոշում, ժողովրդական տնտեսության վերելքն ապահովելու, գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու ամեն մի կոչ կոլեկտիվներին ու մրցության անհատ մասնակիցներին համակում են աշխատանքային խանդավառությամբ ու քաղաքական ակտիվությամբ: Նրանցից յուրաքանչյուրն ինքնաբուխ ձգտում է իր ողջ եռանդն ու ջանքերը, ստեղծագործական պրպտումների արդյունքներն ի սպաս դնել հանրային արտադրության համակողմանի զարգացման, սոցիալիստական հայրենիքի բարգավաճման ու հզորացման վեհ գործին:

Սոցիալիստական մրցության մեջ, համաժողովրդական այդ պայքարում առանձնանում են այնպիսի կոլեկտիվներ ու անհատներ, որոնք ցուցաբերում են ձեռներեցություն, կամենում առավել մեծ ներդրում անել ընդհանուր արդյունքում, նոր խոսք ասել արտադրական ծրագրի կատարման, տեխնիկատնտեսական ցուցանիշների լավացման, մեքենասարքավորումների կատարելագործման ասպարեզում: Այս իրողությունը պայմանավորված է սոցիալիստական հասարակարգի ընձեռած լայն հնարավորություններով, երկրի տնտեսական զարգացման ողջ ընթացքով:

Սոցիալիստական շինարարության, հատկապես զարգացած սոցիալիզմի պատմությունը հարուստ է սովետական մարդկանց աշխատանքային խիզախումների ու մեծագործությունների բազում օրինակներով: Երկրի վերականգնման ու վերակառուցման, ինդուստրացման, ժողովրդական տնտեսության զարգացման նախապատերազմյան ու հետպատերազմյան հնգամյակների տարիներին, գիտատեխնիկական հեղափոխության արդի ժամանակաշրջանում արտադրության հազարավոր առաջամարտիկներ, հարյուրավոր առաջավոր կոլեկտիվներ հանդես են եկել արտադրական ծրագրերը վաղա-

ժամկետ կատարելու, առավել արտադրողաբար աշխատելու հայրենասիրական նախաձեռնություններով։ Իրենց անձնվեր աշխատանքով նրանք գերազանցել են տվյալ ժամանակի տեխնիկական նորմաները, խանդավառել բանվորների ու կոլտնտեսականների հոծ զանգվածներին։

***

Սոցիալիստական մրցության ընթացքում երևան եկած ամեն մի կոլեկտիվ ու անհատական նախաձեռնություն, ունենալով ստեղծագործական բնույթ, իր էությամբ, հետապնդած նպատակով ու կիրառման եղանակներով մարդկանց բարձր գիտակցականության արգասիք է, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի յուրահատուկ դրսևորում։ Վ. Ի. Լենինը բանվորների ինքնակամ նախաձեռնությունները համարում էր կոմունիստաբար աշխատելու և ապրելու արտահայտություն, հերոսություն ու անձնազոհություն։ ««Կոմունիստական շաբաթօրյակները» հենց այն պատճառով ունեն հսկայական պատմական նշանակություն, որ նրանք մեզ ցույց են տալիս բանվորների գիտակցական և կամավոր նախաձեռնությունն աշխատանքի արտադրողականության զարգացման մեջ, նոր աշխատանքային կարգապահության անցնելու, տնտեսության սոցիալիստական պայմաններ ստեղծելու մեջ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 519)։

Սովետական իշխանության առաջին տարիներին աշխատավորների նախաձեռնությունները, ինչպես Վ. Ի. Լենինն էր ասում, մեծ գործի, արմատական հեղաշրջման սկիզբն էին։ Զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ գիտատեխնիկական հեղափոխությունը ծավալվում է ամբողջ խորությամբ ու լայնությամբ, կատարելագործվում են աշխատանքի ու սոցիալիստական մրցության կազմակերպման ձևերն ու եղանակները, երբ ստեղծվում է կոմունիզմի նյութատեխնիկական բազան, դրանք այդ պրոցեսի խորացման, մարդկանց գիտակցական կարգապահության արտահայտության, նրանց կողմից աշխատանքի նկատմամբ կոմունիստական նոր վերաբերմունքի դրսևորման ամենացայտուն վկայությունն են։ Հատկանշական է, որ մեր երկրի աշխատավորներն ամեն տարի ապրիլին, ի պատիվ առաջնորդի ծննդյան տարելիցի, դուրս են գալիս համամիութենական շաբաթօրյակի։ Այս տարի, օրինակ, Հայաստանի աշխատավորները, մասնակցելով Վ .Ի. Լենինի ծննդյան 107-րդ տարեդարձին և մեծ Հոկտեմբերի 60-ամյակին նվիրված կոմունիստական շաբաթօրյակին, հնգամյակի ֆոնդ մուծեցին 1.431 մլն ռուբլի։

Գաղտնիք չէ, որ արտադրությունը խթանող նախաձեռնությամբ հանդես է գալիս ոչ միայն նա, ով գործընկերներից տարբերվում է տեխնիկային տիրապետելու հմտությամբ, արտադրության գաղտնիքների խորագիտակությամբ, այլև աչքի է ընկնում իր բարձր գիտակցականությամբ, կարգապահությամբ, քաղաքական-գաղափարական հասունությամբ, սոցիալիստական սեփականության ու աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքով։ Նախաձեռնությամբ հանդես եկող յուրաքանչյուր անհատ կամ կոլեկտիվ հենվում է իր նախընթաց փորձի վրա, օգտագործում իր հմտությունը, տնտեսապես հիմնավորում առաջադրած խնդրի իրականացման հնարավորությունը։

Նրանք մշտապես ու հաստատակամորեն պայքարում են իրենց ձեռնարկության մակնիշի պատվի համար, պրոֆեսիոնալ հպարտության զգացումով ընկալում ամեն մի հաջողություն, հարգում սոցիալիստական համակեցության կանոնները։ Այս նշանաբանով է աշխատում Երևանի էլեկտրապարատների գործարանի հավաքման առաջին արտադրամասի մարդատար վերելակների վահանների մոտանժման բրիգադը, որը ղեկավարում է Խաչիկ Աբգարյանը։ Կոլեկտիվի ինը անդամներից երեքը կոմունիստներ են, մեկը՝ կոմերիտական։ Նրանք բոլորն էլ ունեն միջնակարգ և միջնակարգ-մասնագիտական կրթություն։ Կուսկոմիտեի քարտուղար Ռ. Հակոբյանը մի քանի տարի եղել է այս կոլեկտիվի անդամ։ Բրիգադը 1973 թվականին արժանացել է կոմունիստականի բարձր կոչման և ամեն տարի պայքարում է այն պաշտպանելու համար։ Դա դառնում է սոցիալիստական պարտավորությունների պարտադիր կետ։ Սոցիալիստական մրցության մեջ հաղթող ճանաչվելու համար



բրիգադը 1974 թ. շահել է Մոլդավական ՍՍՀ-ի նույնատիպ՝ էլեկտրապարատների գործարանի հուշադրոշը, հաջորդ տարի ստացել անձնական դրոշմով աշխատելու իրավունք։ Այժմ բրիգադի թողարկած բոլոր վեց արտադրատեսակներն ունեն պետական որականիշ։ Իններորդ հնգամյակի վերջին տարում նա երկրին տվեց 80 հազար ռուբլու լրացուցիչ արտադրանք։ Եվ միանգամայն օրինաչափ է, որ բրիգադի ամեն մի նախաձեռնություն հավատով է տոգորում ոչ միայն նրա անդամներին, այլև ձեռնարկության մյուս տեղամասերի բանվորներին։ Բրիգադի «Ութժամյա արտադրական նորման՝ յոթ ժամում» նախաձեռնությունն արժանացավ գործարանի կուսբյուրոյի ու կուսակցության լենինյան շրջկոմի բյուրոյի հավանությանը և ջերմ արձագանք գտավ նաև շրջանի ձեռնարկություններում։ Բրիգադի փոքրաթիվ, բայց կամքով ամուր կոլեկտիվը, նախաձեռնությունն իրականացնելու նպատակով, խոստացել է տասներորդ հնգամյակի յուրաքանչյուր օրը հայտարարել բարձր արդյունավետության ու որակի ստուգատես, աշխատանքի արտադրողականությունը տարվա ընթացքում բարձրացնել 15 տոկոսով, օժանդակ նյութերի ծախսը կրճատել հինգ, մոնտաժման աշխատատարությունը՝ տասը տոկոսով, շարունակել արտադրանք թողարկել անձնական դրոշմանիշով, այն հասցնել համաշխարհային ստանդարտի մակարդակին, անել մի քանի ռացիոնալիզատորական առաջարկություն, ակտիվորեն մասնակցել հասարակական աշխատանքներին։

Հատկանշական է, որ բրիգադի նախաձեռնությունն ունի նաև դաստիարակչական նշանակություն։ Անցել է մեկուկես տարի, և բրիգադի մարդիկ իրենց ակտիվ գործունեությամբ, նախաձեռնությունն իրականացնելու հաստատակամությամբ ապացուցել են, որ իրենց խոսքի տերն են։ Այդ ժամանակամիջոցում կոլեկտիվը կատարել է երկու տարվա արտադրական առաջադրանք, պաշտպանել կոմունիստական աշխատանքի բրիգադի բարձր կոչումը։ Ծանոթանալով ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծին և շարունակելով մրցությունը ի պատիվ մեծ Հոկտեմբերի 60-ամյակի՝ բրիգադը ամեն ամիս, 600 վերելակային վահանի փոխարեն, մոնտաժում է 620—630-ը, տալիս էլեկտրաէներգիայի և մոնտաժման նյութերի զգալի խնայողություն։

Խաչիկ Աբգարյանի բրիգադի գործունեության օրինակը վկայում է, որ, հանդես գալով այս կամ այն նախաձեռնությամբ, սովետական մարդիկ պատրաստակամություն են հայտնում ոչ միայն առավել արտադրողաբար ու արդյունավետ աշխատեցնել մեքենասարքավորումները, ավելի քիչ ծախսումներով թողարկել ավելի շատ ու բարձրորակ արտադրանք, այլև օգնել ետ մնացողներին, օրինակ ծառայել նրանց համար։ Եվ նախաձեռնության ներդրման ու արմատավորման, ընդօրինակման ու տարածման ընթացքում մարդու ողջ էության մեջ կատարվում են որակական լուրջ փոփոխություններ։ Նա դառնում է ավելի շրջահայաց, գործին վերաբերվում ավելի մեծ պատասխանատվությամբ, ցուցաբերում սոցիալիստական ձեռներեցություն, դրսևորում գիտակցական կարգապահություն։

Կուսակցական կազմակերպություններն ամեն կերպ պաշտպանում են առաջավորների հայրենասիրական շարժումները, իրենց ակտիվ գործունեությամբ նպաստում դրանց տարածմանն ու արմատավորմանը, նախաձեռնությունների հիման վրա ստանձնած պարտավորությունների կատարմանը, խրախուսում դրանց հեղինակներին ու հետևորդներին։ Այս առումով հարուստ և ուսանելի փորձ կա Երևանի էլեկտրապարատների, Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, ալյումինի, էլեկտրալամպերի, Կիրովականի քիմիական մանրաթելի, Ճշգրիտ հաստոցների գործարաններում և հանրապետության առաջատար այլ ձեռնարկություններում։ Էլեկտրապարատների գործարանի կուսկազմակերպությունն ու կուսբյուրոն միշտ էլ զորավիգ են լինում մրցողներին ու նախաձեռնությունների հեղինակներին։ Կուսբյուրոն գործարար կերպով քննարկել է նաև մեխանիկական արտադրամասի կոմունիստներ Թ. Շահգելդյանի, Ա. Վարդանյանի, Ռ. Գրիգորյանի, Մ. Ղազարյանի և նրանց գործընկերների՝ «Յուրաքանչյուր կոմունիստի արտադրանքին՝

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՍՄԿԿ ԼԵՆԻՆՅԱՆ ԱԳՐԱՐԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Գ. Վ. ԴԱՎԹՅԱՆ
Տնտեսագիտության թեկնածու

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ կոմունիստական կուսակցության ագրարային քաղաքականության հիմնական խնդիրներից է գյուղատնտեսության անընդհատ վերելքի խթանումը, որի առաջընթաց տեմպերով են պայմանավորված բնակչության բարեկեցության բարձրացումը, թեթև ու սննդի արդյունաբերությունը հումքով ապահովելը։*

*Սովետական գյուղի սոցիալիստական վերափոխման բոլոր փուլերում կուսակցությունն առաջնորդվել է լենինյան կոոպերատիվ պլանով։ Գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման, կոլտնտեսությունների ու սովխոզների կազմակերպման շնորհիվ գյուղում հաստատվեց հասարակական հարաբերությունների նոր սիստեմ։ Լենինյան կոոպերատիվ պլանի հիման վրա գյուղի վերակառուցումը հանդիսացավ գյուղատնտեսության արտադրաուժերի առավել արագ աճի միակ ճիշտ ուղին, ամբողջ էկոնոմիկայի պլանաչափ զարգացման անհրաժեշտ պայմանը։*

*Հավատարիմ լենինյան ագրարային քաղաքականության սկզբունքներին, մեր կուսակցությունը պատմական նոր պայմաններում ընդհանրացրեց սոցիալիստական գյուղատնտեսության նվաճումները և մշակեց նոր ուղիներ գյուղի սոցիալ-տնտեսական հետագա անշեղ զարգացման վերաբերյալ։*

*ՍՄԿԿ ագրարային քաղաքականության կարևոր առանձնահատկությունը նրա խիստ գիտական բնույթն է։ Այդ քաղաքականության մեջ լայն արտացոլում է գտել արտադրաուժերի և սոցիալ-տնտեսական հարաբերությունների զարգացման միասնության լենինյան գաղափարը։*

*Կուսակցության ագրարային քաղաքականության նոր խնդիրները համակողմանիորեն մշակվեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումում։ Պլենումի նշած քաղաքական գիծը հետագա զարգացում ստացավ և ամրապնդվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1966 թ. մայիսյան, 1968 թ. հոկտեմբերյան և 1970 թ. հուլիսյան պլենումներում, կուսակցության XXIII, XXIV և XXV համագումարներում։*

*ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումից հետո ընկած ժամանակաշրջանում կուսակցության Կենտկոմը և սովետական կառավարությունը ձեռնամուխ եղան գիտականորեն լուծելու ագրարային քաղաքականության հանգուցային հարցերը՝ արտադրության աճը խթանող տնտեսական պայմանների ստեղծումը, ներառյալ մթերումների նոր կարգը, կապիտալ ներդրումների առավել աճը, գյուղատնտեսության մեքենայացման, քիմիացման և հողերի մելիորացման երկարաժամկետ կոմպլեքս ծրագրի իրականացումը, գյուղատնտեսական գիտության զարգացումը, արտադրության կազմակերպման ու կառավարման կատարելագործումը։*



*Իններորդ հնգամյակը մեր ժողովրդի, կուսակցության համար վիթխարի նշանակություն ունեցած իրադարձությունների և մեծագործությունների ժամանակաշրջան էր։ Հնգամյակի տարիներին նոր բնագծեր նվաճվեցին կոմունիզմի կառուցման գործում։ Լուրջ տեղաշարժեր կատարվեցին գյուղատնտեսության ասպարեզում։ Անընդհատ ամրապնդվում էր դրա նյութատեխնիկական բազան, կապիտալ ներդրումները կազմեցին 131 մլրդ ռուբլի, որը 49 միլիարդով ավելի էր, քան ութերորդ հնգամյակում։*

*Լայն մասշտաբներով էին կատարվում արտադրության մեքենայացումն ու քիմիացումը, հողերի մելիորացումը։ Գյուղատնտեսությունն ստացավ 1,7 մլն տրակտոր, ավելի քան 1,1 մլն բեռնատար ավտոմեքենա, 15,8 մլրդ ռուբլու գյուղատնտեսական մեքենաներ և շատ այլ տեխնիկա։ Գյուղը վերազինվում է ավելի ու ավելի կատարյալ տեխնիկայով։ Վերջին տարիներին այն ստացել է բարձր արտադրողականություն ունեցող տրակտորներ, կոմբայններ և այլ գյուղատնտեսական մեքենաներ, ավելի քան 300 մլն տոննա հանքային պարարտանյութ։ Պետական ու կոլտնտեսային միջոցների հաշվին ոռոգելի հողերի տարածությունն ընդարձակվեց 4,6 մլն հեկտարով, չորացվեցին 4,4 մլն հեկտար գերխոնավ տարածություններ։*

*Ընթացիկ հնգամյակի առաջին տարում գյուղատնտեսությանը մատակարարվեց 368 հազար տրակտոր, 264 հազար բեռնատար և մասնագիտացված ավտոմեքենա, 98 հազար տոննա հանքային պարարտանյութ։ 1976 թվականին Սովետական Միությունում արտադրվեց 224 մլն տոննա հացահատիկ, որը երկրի պատմության մեջ ամենաբարձրն է, մթերվեց 8,3 մլն տոննա բամբակի հումք՝ նախորդ տարվանից 600 հազար տոննայով ավելի։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքը կազմեց 23,6 մլրդ ռուբլի, կամ 1970— 1975 թթ. միջին տարեկանից 5 տոկոսով բարձր։*

*ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումից հետո գյուղատնտեսությունն ամուր կանգնել է անշեղ վերելքի, դինամիկ զարգացման ուղու վրա։ Բավական է նշել, որ պլենումից հետո անցած տարիներին մեկ բնակչին ընկնող գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունն աճեց գրեթե մեկ քառորդով, չնայած այն բանին, որ երկրի բնակչությունն այդ ժամանակամիջոցում ավելացավ 23 միլիոնով։ Գյուղատնտեսության նյութատեխնիկական ներբազայի ամրապնդման, գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների ներդրման շնորհիվ կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատանքի արտադրողականությունն աճեց 1,6 անգամ։*

*Անցած հնգամյակում որոշակի հաջողություններ ձեռք բերեցին նաև մեր հանրապետության գյուղատնտեսության աշխատողները։ Գյուղատնտեսության մեջ պետական կապիտալ ներդրումների ծավալը կազմեց 736 մլն ռուբլի։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը, նախորդ հնգամյակի համեմատությամբ, մեծացավ մոտ 22 տոկոսով։ Աճեց տեխնիկական զինվածությունը, զգալիորեն ավելացան բուսաբուծական և անասնապահական մթերքների արտադրությունն ու վաճառքը։*

*Մեր հանրապետության գյուղի աշխատավորները, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, հաջողությամբ կատարեցին նաև տասներորդ հնգամյակի առաջին տարվա պլանային առաջադրանքները։*

*1976 թվականին հանրապետությունում առաջին անգամ կալսվեց 315 հազար տոննա հացահատիկ կամ, միջինը, հեկտարից ստացվեց 19 ցենտներ։ Արտադրվեց ավելի քան 315 հազար տոննա բանջարեղեն, մոտ 200 հազար տոննա խաղող, 167 հազար տոննա շաքարի ճակնդեղ։*

*Կարևորն այն է, որ գյուղատնտեսական արտադրանքի արտադրության ավելացումն այժմ ձեռք է բերվում հիմնականում ցանքատարածությունների բերքատվության բարձրացման, անասունների մթերատվության աճի հաշվին։*

*Գյուղատնտեսական մթերքների արտադրանքի աճի, մթերքների մթերում-*

XXV համագումարի նյութերը, էջ 77): Այժմ այդ պրոցեսը գյուղատնտեսության զարգացման մայրուղին է:

ՍՄԿԿ Կենտկոմի «Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը է՛լ ավելի զարգացնելու մասին» որոշումը նշանավորում է գյուղատնտեսության հետագա զարգացման գլխավոր ուղղությունը, զարգացած սոցիալիզմի պայմաններում լենինյան կոոպերատիվ պլանի գաղափարների պրակտիկ իրականացման նոր փուլը: Այդ որոշումն ունի տնտեսական, քաղաքական և սոցիալ-տնտեսական հսկայական նշանակություն: Կուսակցության նախատեսած միջոցառումները բացում են գյուղատնտեսական մթերքների արտադրության տեմպերը մեծացնելու, հասարակական հարաբերությունները կատարելագործելու ուղիները:

ՀԿԿ Կենտկոմի ապրիլյան (1977 թ.) պլենումը, որը քննարկեց «Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը է՛լ ավելի զարգացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կատարման միջոցառումների մասին հարցը, նշեց, որ չնայած հանրապետությունում վերջին տարիներին այդ նպատակով որոշակի աշխատանք է կատարվել, սակայն այն դեռևս հեռու է բավարար լինելուց: Կենտկոմի պլենումի հաստատած միջոցառումներով նախատեսվում է առաջիկա չորս տարիներին կազմակերպել տավարի ու խոզի մսի արտադրության, հորթերի աճեցման, թռչնաբուծական բազմաթիվ միջտնտեսային արտադրական ձեռնարկություններ: Նախատեսվում է մոտակա տարիներին Արտաշատի, Արարատի, Թալինի, Աբովյանի և Սիսիանի շրջաններում ստեղծել խոշոր մեքենայացված ոչխարաբուծական ֆերմաներ: Գյուղատնտեսության կառավարման սիստեմի կատարելագործման նպատակով կազմակերպվելու են մասնագիտացված արտադրական միավորումներ՝ Կալինինոյի, Սևանի, Արագածի, Ղուկասյանի, Ամասիայի և մյուս շրջաններում մսի, կաթի, կարտոֆիլի և այլ մթերքների արտադրության գծով: Հանրապետությունում կհիմնադրվի գիտաարտադրական միավորում խաղողի և պտղատու կուլտուրաների տնկանյութի արտադրության նպատակով: Կըստեղծվեն մի շարք ագրոարդյունաբերական միավորումներ խաղողագործության, պտղաբուծության և գինու-կոնյակի ու պահածոների արդյունաբերության ինտեգրացման հիման վրա:

Միջտնտեսային կոոպերացիայի զարգացման անհրաժեշտությունը միայն նրանում չէ, որ հաճախ առանձին տնտեսություններ ի վիճակի չեն լինում ստեղծելու խոշոր ձեռնարկություններ, այլև այն բանում, որ դրանց առավել լրիվ ու արդյունավետ օգտագործումը հնարավոր է իրականացնել մի խումբ տնտեսությունների ուժերով: Այդպիսի կոոպերացումը, բացի արտադրական խնդիրների լուծումից, ունի նաև սոցիալ-տնտեսական մեծ նշանակություն: Միջտնտեսային արտադրական կապերի զարգացումը նոր պայմաններ է ստեղծում կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության հանրայնացման մակարդակի հետագա բարձրացման ու կատարելագործման, քաղաքի ու գյուղի միջև էական տարբերությունների աստիճանական վերացման համար:

Գյուղատնտեսության հետագա ինտենսիվացումն ու արդյունավետության բարձրացումը սերտորեն կապվում են գիտության զարգացման, գիտատեխնիկական նվաճումների պրակտիկ իրագործման հետ: Վերջին տասնամյակը բնութագրվում է գիտության և արտադրության ավելի սերտ ու ակտիվ կապով, գյուղատնտեսության հրատապ պրոբլեմների գիտական հետազոտությունների հետագա ընդլայնմամբ:

Արտադրության պահանջները շարունակ նոր խոշոր պրոբլեմներ են առաջադրում գիտությանը: Գիտության և արտադրության միջև եղած կապի ուժեղացման համար բացառիկ կարևոր նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի Գյուղատնտեսական գիտության արդյունավետության հետագա բարձրացման և արտադրության հետ նրա կապի ամրապնդման միջոցառումների մասին որոշումը: Որոշման մեջ ընդգծված է, որ ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրների լույսի ներքո գյուղատնտեսական արտադրության զարգացումն արագացնելու և այն ժամանակակից ինդուստրիալ հիմքի վրա փոխադրելու գործում ավելի ու ավելի կարևոր նշանակություն է ստանում գիտությունը: Այդ փաստաթղթում կուսակցության Կենտկոմը գիտնականներին և գիտական կոլեկտիվներին նպատակամղում է հիմնարար ու կիրառական հետազոտությունների հետագա ծավալմանը, նրանց ջանքերը և ուշադրությունը կենտրոնացնում միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման արդյունավետության բարձրացման, մասնագիտացված արտադրության համակենտրոնացման ռացիոնալ ձևերի, գյուղատնտեսության վարման սիստեմների մշակօպտիմալ տարբերակների, բարձր բերքատու սորտերի ստեղծման ու տնտեսագիտական հիմնավորման, անասունների առավել մթերատու ցեղերի բուծման, արտադրության կազմակերպման ու տեխնոլոգիայի առաջադիմական ձևերի վերաբերյալ գիտական առաջարկությունների մշակման վրա:

Մեր երկրի աշխատավորները պատրաստվում են տոնելու Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակը: Վաթսուն տարիների ընթացքում կոմունիստական կուսակցության վարած լենինյան քաղաքականության շնորհիվ ստեղծվել է ոչ միայն հզոր արդյունաբերություն, այլև սոցիալիստական խոշոր գյուղատնտեսական արտադրություն: «Տնտեսական ու սոցիալական կարևորագույն նպատակներին է ծառայում կուսակցության ագրարային քաղաքականությունը, որով նախատեսվում է գյուղատնտեսական արտադրությունը դարձնել էկոնոմիկայի բարձր զարգացած հատված,— ասված է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թ. հունվարի 31-ի որոշման մեջ:— Այդ քաղաքականությունը լենինյան կոոպերատիվ պլանի շարունակումն ու ստեղծագործական զարգացումն է նոր պայմաններում»:

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՆՈՐ ՏԻՊԻ ԱՇԽԱՏԱՎՈՐԻ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ

**Ռ. Ա. ԱՎԱԳՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

*ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ, նրա հոգևոր և ֆիզիկական ուժերի համակողմանի զարգացման հարցերը միշտ էլ եղել են ՍՄԿԿ-ի և սովետական պետության տեսադաշտում։ Ուստի, պատահական չէ, որ ՍՄԿԿ XXV համագումարի մշակած սոցիալ-տնտեսական և կուլտուրական շինարարության ծրագրում առանձնահատուկ տեղ է հատկացվում «... նախ և առաջ* սովետական մարդկանց բարեկեցության հետագա բարձրացմանը, նրանց աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավմանը, առողջապահության, կրթության, կուլտուրայի զգալի առաջադիմությանը՝ այն ամենին, ինչը նպաստում է նոր մարդու ձևավորմանը, անհատի համակողմանի զարգացմանը, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործմանը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 60)։

*Մեր երկրի սոցիալ-տնտեսական կյանքում կատարվող հեղափոխական վերափոխություններն անխզելիորեն կապված են ժամանակակից գիտատեխնիկական առաջընթացի հետ։ Անդրադառնալով կուսակցության տնտեսական քաղաքականության հանգուցային պրոբլեմներին, Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում նշեց, որ «Առաջնահերթ խնդիրը մնում է գիտատեխնիկական առաջընթացի արագացումը»։*

*Գիտության և տեխնիկայի բուռն զարգացումը ծառայում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, հասարակական հարաբերությունների կատարելագործման և նոր մարդու դաստիարակության կարևորագույն խնդրին։ Նշելով ԳՏՀ-ի աճող դերը տասներորդ հնգամյակի խնդիրների իրականացման գործում, Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի 1976 թ. հոկտեմբերյան պլենումում նշեց, որ սովետական յուրաքանչյուր մասնագետ պետք է տիրապետի «կառավարման լենինյան գիտությանը, հաստատի արտադրության պլանավորման և կազմակերպման ժամանակակից մեթոդները, լինի գիտատեխնիկական առաջադիմության ակտիվ կիրառողը»։ Այստեղից հետևում է, որ այսօր ԳՏՀ-ի և նոր տիպի անհատի ձևավորման պրոցեսի փոխկապակցության տեսական վերլուծությունը դարձել է առաջնահերթ և հրատապ խնդիր։ «Գիտատեխնիկական հեղափոխություն—մարդ» պրոբլեմի ուսումնասիրությունն ունի կարևոր նշանակություն ո՛չ միայն սոցիալական գիտության զարգացման, այլև մարդու հետագա էվոլյուցիայի ըմբռնման իմաստով։*

*ՆԵՐԿԱՅՈՒՄՍ ԲՈՒՌՆ ԿԵՐՊՈՎ ծավալվող գիտատեխնիկական հեղափոխությունն աննախընթաց թռիչք է մարդու կողմից բնության վերափոխման, արտադրողական ուժերի զարգացման, հասարակության ամբողջ տեխնիկական բազիսի վերակառուցման մեջ։ Գիտության և տեխնիկայի արագ զարգացումը հեղափոխական ազդեցություն է ունենում արտադրության պրոցեսի բոլոր կողմերի վրա և մեծապես խթանում տեխնիկական ու սոցիալական առաջընթացի տեմպերը։*

*Ժամանակակից ԳՏՀ-ն, ամբողջովին փոխելով արտադրության տեխնիկական դեմքը, միաժամանակ մարդու գործունեության մեջ առաջ է բերում որակական տեղաշարժեր՝ կապված արտադրության պրոցեսում նրա տեղի, դերի և ֆունկցիաների արմատական փոփոխման հետ։ Արտադրողական ուժերի համակարգում սուբյեկտիվ գործոնի տեղի հիմնովին վերափոխումն արտացոլում է արդի գիտատեխնիկական առաջընթացի էությունը։*

*ԳՏՀ-ն որոշակի ազդեցություն է գործում նաև հասարակական հարաբերությունների ողջ համակարգի վրա։ Սակայն գիտության և տեխնիկայի զարգացումն իր հերթին կապված է տիրապետող հասարակական հարաբերությունների բնույթի, հասարակության սոցիալ-քաղաքական կառուցվածքի հետ։ Դրա հաստատումն է այն իրողությունը, որ գիտատեխնիկական առաջընթացի սոցիալական հետևանքները (հատկապես մարդու անհատականության վրա նրա ունեցած ազդեցությունը) տրամագծորեն հակադիր են կապիտալիզմի և սոցիալիզմի պայմաններում։*

*Բուրժուական հասարակարգում գիտատեխնիկական հեղափոխությունն ավելի է սրում կապիտալիզմին ներհատուկ հակասությունները ու խորացնում դրա ընդհանուր ճգնաժամը։ Գիտության և տեխնիկայի առաջընթացի շնորհիվ առավել հստակ են ի հայտ գալիս կապիտալիզմի սոցիալական խոցերը՝ ինֆլյացիան, գների օրըստօրե աճը, վալյուտաֆինանսական ճգնաժամը, գործազրկությունը։ Կապիտալիզմի օրոք ԳՏՀ-ն զարգանում է տարերայնորեն, ունի միակողմանի բնույթ։ Դրա նպատակը, ամենից առաջ, մոնոպոլիաների տնտեսական ու քաղաքական դիրքերի ամրապնդումը և աշխատավորների շահագործման ուժեղացումն է։ Մոնոպոլիաները այնքանով են շահագրգռված գիտության և տեխնիկայի զարգացմամբ, որքանով դրանք կարող են ապահովել գերշահույթի ձեռքբերումը։*

*Կապիտալիզմը, որն իր էությամբ հակադիր է անհատի ազատ ու համակողմանի զարգացմանը, ԳՏՀ-ի վիթխարի հնարավորությունները չի ծառայեցնում մարդու ստեղծագործական ուժերի ծաղկմանն ու բազմապատկմանը։ Ընդհակառակը, գիտության ու տեխնիկայի բուռն զարգացումն ավելի ու ավելի է ճնշում անհատին, կաշկանդում նրա ձիրքերի և ունակությունների ծավալումը։ Նման պայմաններում մարդը հոգեպես աղքատանում է, դիմազրկվում։ Գիտության ու տեխնիկայի նվաճումներին համընթաց ավելի է խորանում նրա օտարումը աշխատանքից և դրա արդյունքներից։ Այդ աշխատանքը ոչ թե անհատի ստեղծագործական ուժերի դրսևորման պրոցես է, այլ նրա ֆիզիկական եռանդի լոկ օգտագործում։ Որքան արագանում են գիտատեխնիկական առաջընթացի տեմպերը, այնքան ավելի մեծ չափերով է ինքնօտարվում բանվորը, դիմազրկվում մարդկային հարաբերությունների համակարգում։*

*Ի տարբերություն կապիտալիզմի «...միայն սոցիալիզմը կազատի գիտությունը նրա բուրժուական կապանքներից, կապիտալին ստրկանալուց, կեղտոտ կապիտալիստական շահասիրությանը ստրկանալուց»,— գրել է Վ. Ի. Լենինը (*Երկեր*, հ. 27, էջ 511)։ Սոցիալիզմը վիթխարի հնարավորություններ է ստեղծում գիտության և տեխնիկայի անսահմանափակ զարգացման համար։ Սոցիալիզմի պայմաններում գիտատեխնիկական առաջընթացը իրականացվում է գիտակցաբար ու պլանաչափ և ղեկավարվում է ողջ հասարակության կոլեկտիվ բանականությամբ։ ԳՏՀ-ն լիովին ներդաշնակվում է սոցիալիստական հասարակարգի բնույթին, քանի որ այն նպաստում է արտադրողական ուժերի աննախընթաց զարգացմանը և յուրաքանչյուր անհատի ունակությունների ու ձիրքերի համակողմանի ծաղկմանը։ Ահա ինչու գիտատեխ-*

Անհատի հոգևոր ու ֆիզիկական ուժերի համակողմանի զարգացումը կապված է այն պահանջների կենսագործման հետ, որոնք դնում է արդի գիտատեխնիկական հեղափոխությունը մարդու ողջ կենսագործունեության առջև: Արտադրաուժերի կառուցվածքում և դինամիկայում կատարվող որակական փոփոխությունները հրամայաբար պահանջում են անհատի սոցիալական ինքնագիտակցության աստիճանի բարձրացում, նրա պատասխանատվության և ինքնահսկման աճ, հասարակական պարտքի խոր գիտակցում և այլն: Բացի դրանից, այսօր երբ արտադրության մեջ տեղի է ունենում մի կողմից արտադրաուժերի կատարելագործման, մյուս կողմից՝ նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ստեղծման երկմիասնական պրոցես, բանվորից պահանջվում է և՛ բազմապատկել իր ստեղծագործական ջանքերը, և՛, միաժամանակ, ի հայտ բերել իր բոլոր ունակություններն ու տաղանդը, որպեսզի կարողանա դառնալ ավտոմատացված արտադրության ակտիվ սուբյեկտ: Իսկ դրա համար անհրաժեշտ է, որ բանվորը տիրապետի մասնագիտական խոր գիտելիքների, ունենա բարձր որակավորում, հանրակրթական և պոլիտեխնիկական նախապատրաստություն, արտադրական և կուլտուրական հմտություններ: Ավտոմատացված արտադրության բանվորի գիտական և տեխնիկական պատրաստվածության անհրաժեշտությունը բխում է ինժեներատեխնիկական տիպի որակավորման պահանջից, որը պետք է համապատասխանի ո՛չ միայն այսօրվա պահանջմունքներին, այլև զգալիորեն առաջ անցնի՝ խթանելով տեխնոլոգիայի հետագա կատարելագործումը և նրա արագ յուրացումը:

Արդի ԳՏՀ-ն որոշակի պահանջներ է ներկայացնում աշխատողի հոգեբանական-ֆիզիոլոգիական հնարավորությունների հետագա ծավալմանը: Մեքենաների ավտոմատ սիստեմների ընդհանուր հսկողությունը և կառավարումը զգալիորեն մեծացնում են մարդու հոգեկան ծանրաբեռնվածությունը: Ռադիոտեխնիկայի, հեռուստամեխանիկայի, էլեկտրոնիկայի, հաշվիչ մեքենաների և կիբեռնետիկական սարքերի կիրառումը արտադրության մեջ մարդուց պահանջում են մեծ հիշողություն, ուշադրության կենտրոնացում, ընկալման խորություն, արագ կողմնորոշում և այլն: Ուստի, նոր տիպի աշխատավորի ձևավորումը ենթադրում է մարդկային նոր հոգեբանություն, նորագույն տեխնիկային և տեխնոլոգիական պրոցեսներին հոգեպես հարմարվելու ունակություն: Ճիշտ է, ժամանակակից կիբեռնետիկական մեքենաները լրացնում են մարդկային ուղեղի անկատարելությունը մի շարք գործողություններում (հիշել, մտապահել, հաշվել և այլն), բայց միաժամանակ պահանջում են ուժեղացնել զգայական օրգանների ցուցումները և դրանց հակադարձ արագ ռեակցիան: Հոգեբանական ծանրաբեռնվածությունը, անկասկած, բացասաբար է ազդում աշխատողի զգայական օրգանների և ողջ անհատականության վրա: Այդ պատճառով սոցիալիզմը, ի տարբերություն կապիտալիզմի, ստեղծում է աշխատանքային այնպիսի պայմաններ, որոնք թեթևացնում են ԳՏՀ-ի պատճառած սոցիալ-հոգեբանական և նյարդային-ֆիզիոլոգիական վնասակար հետևանքները ու նպաստում այն բանին, որ մարդը կարողանա, իր ստեղծագործական անհատականության պահպանման հետ մեկտեղ, ապահովել նաև ավտոմատ սիստեմների գործողությունների հուսալիությունը և արդյունավետությունը:

ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՊՐՈՑԵՍՆԵՐԻ ԱՎՏՈՄԱՏԱՑՈՒՄԸ հանգեցնում է աշխատանքի պրոֆեսիոնալ-տեխնիկական բաժանման հիմքերի արմատական վերակառուցման, տարբեր մասնագիտությունների միջև եղած կապերի էական փոփոխման: Ժամանակակից ԳՏՀ-ն օրինաչափորեն հանգեցնում է աշխատանքի մասնագիտացման սահմանափակությունների վերացման, զգալիորեն կրճատում մասնագիտությունների պիտանիության ժամկետը, լիկվիդացնում է մի շարք մասնագիտություններ և ծնում նորերը, որոնք համապատասխանում են գիտատեխնիկական առաջընթացի արագ տեմպերին: Ներկայումս ավտոմատացված արտադրության պրոցեսում անհատի գործունեության թե՛ բովանդակությունը և թե՛ ուղղությունը ձեռք են բերում միանգամայն այլ փոխազդեցություն: Դրան զուգընթաց, ակնհայտ է դառնում նրա մասնագիտական կատարելագործման և հանրագիտացման զուգակցման անհրաժեշտությունը: Դա համապատասխանում է նաև արտադրության պրոցեսում տեխնիկական առաջընթացի մեջ նկատվող երկու հիմնական տենդենցներին՝ արտադրության մասնագիտացմանը և հետագա կոոպերացմանը, որոնք ենթադրում են մի կողմից խոր գիտելիքներ տվյալ մասնագիտության բնագավառում, մյուս կողմից՝ արտադրության հիմնական պրոցեսներում ազատորեն կողմնորոշվելու ընդունակություն, այսինքն՝ հարակից և տարբեր մասնագիտությունների համատեղում:

Գործունեության տարբեր տեսակների համատեղումն ամենից առաջ պայմանավորված է արդի ԳՏՀ-ի ընձեռած հնարավորություններով: Տեխնիկական առաջընթացը հանգեցնում է շատ մասնագիտությունների գիտատեխնիկական հիմնական սկզբունքների ընդհանրության՝ կապված արտադրության տարբեր պրոցեսների ռիթմի, արագության, կառուցվածքային տարրերի և տեխնոլոգիական բաղադրիչների համանմանության հետ: Ավտոմատացված արտադրության տարբեր պրոցեսների տեխնիկական հիմքերի ընդհանրությունը նպաստում է, որպեսզի բանվորը ընդգրկվի բազմազան գործունեության՝ տիրապետելով երկու, երեք և ավելի մասնագիտությունների: Սակայն նոր տիպի աշխատավորի ձևավորման գործում կարևորը նրա կողմից տարբեր ֆունկցիաների մեխանիկական յուրացումը չէ, այլ այն, թե այդ պրոցեսում նա որքանով է իրեն գործնականում դրսևորում որպես ստեղծագործաբար մտածող էակ, ինչքանով է գործունեության տարբեր տեսակների մեջ առարկայապես մարմնավորում իր ձիրքերն ու տաղանդները և ինչ չափով է նրա գործունեությունն իրոք բազմակողմանի ու բովանդակալից:

ԳՏՀ-ն պայմանավորում է ո՛չ միայն մասնագիտությունների համատեղումը, այլև դրանց արագ հերթափոխումը: Անցումը մի մասնագիտությունից մյուսին, ամենից առաջ, արտահայտում է աշխատանքի փոփոխման օրենքի գործողությունը: Գործունեության բազմազանությունը, զբաղմունքների փոփոխությունը մարդու էության բնական դրսևորումը լինելուց բացի, միաժամանակ արտադրության օբյեկտիվ պահանջն է, որի շնորհիվ միայն կարող են զարգանալ մարդկանց գիտելիքները, ունակություններն ու կարողությունները:

Մասնագիտությունների փոփոխությունն օրինաչափորեն հանգեցնում է ավելի լայն պրոֆիլի պրոֆեսիաների առաջացման, որը կարևոր քայլ է աշխատանքի միակողմանիությունից անցնելու բազմակողմանի ստեղծագործական գործունեության: Լայն պրոֆիլի պրոֆեսիաների անհրաժեշտությունը բխում է արդի ԳՏՀ-ի ներքին տենդենցից, արտադրության կոմպլեքսային ավտոմատացումը հնարավոր է միայն բանվորի նեղ մասնագիտության հաղթահարմամբ և նրա գործունեության հանրագիտացմամբ:

Գիտատեխնիկական հեղափոխության շնորհիվ մեծ չափով կավելանա անհատի ազատ ժամանակը, որը կդառնա նրա ֆիզիկական և հոգևոր ուժերի ծաղկման հիմնական պայման: Ազատ ժամանակի խելացի օգտագործումը նպաստում է ո՛չ միայն յուրաքանչյուր մարդու անհատականության համակողմանի դրսևորմանը, նրա ստեղծագործական կարողությունների զարգացմանն ու կատարելագործմանը, այլև վիթխարի ազդեցություն է ունենում

հասարակության արտադրաուժերի հետագա առաջընթացի վրա: Դեպի կոմունիզմ մեր շարժմանը զուգընթաց լիովին կհաղթահարվի աշխատանքի և ազատ ժամանակի հակադրությունը և «ժամանակը, որն իր տրամադրության տակ ունի մարդը» (Մարքս) բանվորական ժամանակի փոխարեն կդառնա մարդկային կյանքի հարստության ընդհանուր չափանիշ:

Այսպիսով, գիտատեխնիկական հեղափոխության հետագա ծավալումը և նոր տիպի աշխատավորի ձևավորման պրոցեսն ընթանում են միևնույն ուղղությամբ: Շեշտելով գիտատեխնիկական հեղաշրջման էական ազդեցությունը սոցիալիստական հասարակության հետագա առաջընթացի վրա, Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում ասաց. «Գիտատեխնիկական հեղափոխության հաջողությունը, էկոնոմիկայի վրա, հասարակության կյանքի բոլոր կողմերի վրա նրա բարերար ազդեցությունը չեն կարող ապահովվել միայն գիտական աշխատողների ջանքերով: Հետզհետե ավելի մեծ դեր է ըստանում հանրային արտադրության բոլոր մասնակիցների, տնտեսական մեխանիզմի բոլոր օղակների ներգրավումը այդ պատմական նշանակություն ունեցող պրոցեսի մեջ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 72):



Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 07104 Պատվեր 1667 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 14.700 Գինը՝ 20 կոպ.: Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 29/VII 1977 թ: ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան; Ալ. Խանջյան փող. № 28:*

# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 10: «Հայաստան» հրատ., 1977:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրության նախագծի մասին *(զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, 1977 թ. մայիսի 24-ին): «Հայաստան» հրատ., 1977:*

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրություն *(Հիմնական օրենք)— ՍՍՀՄ Սահմանադրության նախագիծ: «Հայաստան» հրատ., 1977.*

Ն. ԿՐՈՒՊՍԿԱՅԱ— Հիշողություններ Լենինի մասին: *«Հայաստան» հրատ., 1977:*

Կոմերիտմիության առաջամարտիկները: *«Հայաստան» հրատ., 1977:*

Հ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ— Լեգենդար Գայը: *«Հայաստան» հրատ., 1977:*

Գ. ՍԱՀԱԿՅԱՆ— Սոցիալիստական արտադրական հարաբերությունների առաջացումը և ձևավորումը: *Ե., ԳԱ հրատ., 1977:*

Մ. ԹԱՓԵՎՈՍՅԱՆ— Հայկական կլասիցիզմի տեսությունը: *Ե., ԳԱ հրատ., 1977:*

Ռ. ԻՇԽԱՆՅԱՆ— Հայ գրքի պատմություն: *Հ. 1: Հայ տպագիր գիրքը 16—17-րդ դարերում: «Հայաստան» հրատ., 1977:*

Ներսիսյանցիներ *(1824 . 1924): Ալբոմը նվիրված է Ներսիսյան դպրոցի հիմնադրման 150-ամյակին, որը հանդիսավորությամբ նշվել է 1974-ին: Ե., ԳԱ հրատ., 1977:*

Վ. ՍՈՒԽՈՄԼԻՆՍԿԻ— Սիրտս նվիրում եմ երեխաներին: *Ե., «Լույս» հրատ., 1977:*

Ա. ՅԱՐԽՈ— Աշխատանքը պաշտպանվում է օրենքով: *«Հայաստան» հրատ., 1977:*

Ա. ՄԱՏԻՆՅԱՆ— Ռուս-հայերեն պոլիգրաֆիական բառարան: *«Հայաստան» հրատ., 1977:*

**Ленин. Партия. Октябрь.** Документы и материалы. М., Политиздат, 1977.

**Рассказы о партии.** Том 3. Изд. 2, доп. М., Политиздат, 1977.

**Б. БАЛУЕВ — Ленин полемизирует с буржуазной прессой.** М., Политиздат, 1977.

**Ф. ПОЛЯНСКИЙ—Критика В. И. Лениным антимарксистских экономических теорий.** М., Политиздат, 1977.

**Ленинские принципы и методы партийного руководства.** М., Политиздат, 1977.

**Борьба партии большевиков за армию в социалистической революции.** Сборник документов. М., Политиздат, 1977.

**А. ТЭНАСЕ — Культура и религия.** М., Политиздат, 1977.

**С. ПОПОВ — Проблема «качества жизни» в современной идеологической борьбе.** М., Политиздат, 1977.

**Научно-техническая революция и идеологическая борьба.** М., Политиздат, 1977.

**И. ЮНАК—Воспитание социалистической дисциплины труда.** М., Политиздат, 1977.

**М. КАРАПЕТЯН—Экономическая победа СССР в Великой Отечественной войне.** 1941—1943 гг. Изд. ЕГУ, 1977.

**Т. АКОПЯН—Очерк истории Еревана.** Изд. ЕГУ, 1977.

ԳԻՆԸ՝ 20 Կ.

Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՆԿԱՐԱՀԱՆՎԱԾ ՀԵՌՈՒՍՏԱՑՈՒՅՑԻՑ

*Լրագրերի կամ ամսագրերի համար շտապ լուսանկար ստանալու միակ եղանակը երբեմն հեռուստացույցից նկարելն է։ Սակայն կինեսկոպի էկրանի գծերը և պատկերի անբավարար լուսավորվածությունը բարդացնում են այդ նկարահանումները։ Լենինգրադի՝ պրոֆ. Մ. Ա. Բոնչ-Բրուևիչի անվան էլեկտրատեխնիկական կապի ինստիտուտում ստեղծվել է յուրօրինակ ֆոտոհեռուստատեսային սարք, որն ավտոմատ նկարում է անհրաժեշտ կադրը. սարքն ունի մի հարմարանք, որն ապահովում է լուսանկարի համապատասխան որակ՝ տպարանային կլիշեի ստացման համար։*

*Այդ սարքը հնարավորություն է ընձեռում կլիշեն ստանալու կատարվող իրադարձությունների ընթացքում։ Սարքը լայնորեն կօգտագործվի գիտական հետազոտություններում, արդյունաբերության տարբեր ճյուղերում, տրանսպորտում և կապում, ամենուր, որտեղ պահանջվում է հեռուստատեսությամբ հաղորդել ինֆորմացիայի ֆոտոգրանցում։*

## ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԹԱՓՈՆՆԵՐԸ

*Պոլիմերային թափոններն այրելիս առաջանում է թունավոր գազ, իսկ եթե թաղում են՝ հողը դառնում է անբերրի։ ԼեՀ քիմիկոսներն ապացուցել են, որ ճանապարհածածկի որակն զգալիորեն բարելավվում է, եթե ասֆալտի տաք զանգվածին խառնվում է 8 տոկոս պոլիպրոպիլեն, պոլիէթիլեն և ժամանակակից այլ պլաստիկ զանգվածներ։ Պոլիմերներով հարուստ ասֆալտը դառնում է ավելի ամուր ու դիմացկուն, չի ճաքճքում ձմռան ցրտից և չի հալվում ամառվա շոգից։*

## ՎԻՐԱՀԱՏՈՒԹՅՈՒՆ ԱՌԱՆՑ ՀԵՐՁԱԳԱՆԱԿԻ

*Էլեկտրամակարդման, ճառագայթման, հեղուկ ազոտով այրման մեթոդներն ավանդական են, սակայն դեռևս կատարյալ չեն։ Բնածին խալերի և անցանկալի այլ գոյացումների այդպիսի հեռացումները վիրաբույժից պահանջում են իսկական վարպետություն, իսկ հիվանդից՝ մեծ համբերություն։ Մեր երկրում ստեղծված նոր պատրաստուկը՝ ֆերեզոլը, ունի մի շարք բացառիկ հատկություններ։ Կենդանի օրգանիզմի վերնամաշկին քսելիս ֆերեզոլը վայրկենապես մեռցնում է անբնական զարգացող բջիջները։ Բոլոր սպիտակուցները միանալով դեղանյութին՝ առաջացնում են պոլիմերային բարդ միացություններ, որոնք և ցավազերծում են մաշկը։*

*Պատրաստուկը թունավոր չէ, չի պահանջում մանրէազերծում, քանի որ ունի մանրէասպան հատկություններ, վտանգավոր չէ նորմալ մաշկի համար, չի հարուցում բարդացումներ, սպիներ։ Այն ազդում է միայն վերնամաշկի վրա։ Ֆերեզոլը լավ արդյունք է տալիս նույնիսկ մաշկի այրվածքների, կարծրացած սպիների հետևանքները վերացնելիս. իսկ հատուկ միջոցների գործադրմամբ հեռացվում է մաշկի քաղցկեղը, էկզեման, պսորիազը և նախկինում անբուժելի համարվող այլ հիվանդություններ։*

## ԼԻՄՈՆԱԹԹՎԵ ԱՆՁՐԵՎԻ ՕԳՈՒՏԸ

*Ջերմաէլեկտրակայանների ծծմբի օքսիդ պարունակող ծխացող գազը ոչնչացնում է բուսականությունը, վնասում մարդու առողջությանը։ Վերջերս ԱՄՆ-ի լեռնահանքային բյուրոն փորձարկել է ծծմբի այդպիսի միացությունների հեռացման եղանակ. խողովակում ստեղծվում է յուրատեսակ անձրև-լիմոնաթթվի նատրիումի և լիմոնաթթվի լուծույթի մշտական հակահոսանք։ Այդ քիմիկատները կլանում են լուծույթը, և ստացվում է փոշենստվածք, որը բավական արժեքավոր քիմիական նյութ է։*